Այրի Տիկին Լեւոն Քանթարճեան , Տէր եւ Տիկին Գրիգոր Քանթարճեան, եւ զաւակը, Օր· Մարի Քանթարճեան, Տէր եւ Տիկին Էտուար Քանթարճեան, Տէր եւ Տիկին Պետրոս Սարգիսեան եւ զաւակները, Այրի Տիկին Մազմանեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Ֆէսճեան, Յակոբեան, Փափազեան, Շիպեան եւ Տըրէն ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր, եղբօր, զարմիկին եւ ազգականին՝

ԼԵՒՈՆ ՔԱՆԹԱՐՃԵԱՆԻ
(Պանտրմացի)

մահը, որ տեղի ունեցաւ Փետրուար 26-ին, իր բնակարանը Սէնթ – Պրիս :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Չորեքշաբթի (Մարտ 1) ժամը 14·15ին: Հաւաքուիլ բնակարանը՝ 20պիս, Րիւ Պերանժէ (Սէնթ–Պրիս), ուրկէ մարմինը պիտի փոխադրուի տեղւոյն գերեզմանատունը: Թաղումը ժամը 15·15ին :

Կառ տիւ Նորէն կառախումբ ժամը 13·25ին (Սարսէլ , Սէնթ Պրիս):

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին, Քաֆէի վերնայարկը: Նիւթ՝ վիճաբանական՝ «Հայ կուսակցութիւններու ծագումը եւ իրենց դերը հայ ճակատագրին հանդէպ »:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԺՈՂՈՎՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ

Այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը 4·30-ին, Հայկական ծէսով պատարագ Անիէռի Սէնթ – Ժընըվիեւ մատրան մէջ :

19, Rue de la Station, ASNIERES.

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Վիէնի մէջ, կազմակերպուած Հ · Մ · Ը · Մ ·ի կողմէ, այս Կիրակի Սէրքլը Կաթոլիք սրահին մէջ, ժամը երեքին :

Մեծ պատրաստութեամբ, կը ներկայացուի «ԿՈՌՆԱԿ»ը, ողբերգ · ? արարով: Հեղ · Մկրտիչ Պէշիկթաշլեան, ղեկավարութեամբ եւ դերակատարութեամբ Սարգիս Քէփէնէկեանի եւ իր խումբին :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՄԱՐՍԷՅԼ ·— Պուլվար Օտտոյի Ս · Յակոբ եկեղեցւոյ Կրօն · Ընկերութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները, հանգուցեալ Ջօհրապ եւ Գեղամ Պօղոսեանի մահուան եօթներորդ և հինգերորդ տարելիցներուն հոգեհանգիստի առթիւ: Տէր եւ Տիկին Մելքոնեան քսան Ն · Ֆ · եկեղեցւոյ, Տէր եւ Տիկին Տէրոյեան, Տէր եւ Տիկին Պօղոսեան , Տէր եւ Տիկին Գասպարեան տասնական Ն · Ֆ · եկեղեցւոյ :

× Հանգուցեալ Կուլինար Աւագեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի Տէր եւ Տիկին Հայրապետեան, Տէր եւ Տիկին Մկրտիչեան, Տէր եւ Տիկին Սահակեան տասնական Ն · Ֆ · եկեղեցիին եւ տասնական Ն · Ֆ · Պուլվար Օտտոյի Կապ · Խաչի մասնաճիւղին, Պուլվար Օտտոյի Ֆ ·Կ ·Խաչի մասնաճիւղին, 20 Ն · Ֆ · եկեղեցիին, Տէր եւ Տիկին Միրոյեան տասը Ն · Ֆ · Կ · Խաչին :

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

ԼԻՈՆ ·— Հ · Յ · Դ · Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 20·30ին , Յոյներու սրահը, ,5 Րիւ Պոնփուա: Խիստ կարեւոր օրակարգ :

ՓԱՐԻԶ ·— Հ · Յ · Դ · Աղբիւր Սերոբ – Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ · ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30-ին, սովորական հաւաքավայրը :



## ԾԱԽՈՒ Է

Պանեէոյի մէջ, ծախու է ազատ փավիյոն մը, չորս սենեակ, խոհանոց, մուտք, տուշ, ջուր , կազ, ելեկտրականութիւն, 250 քառակուսի մեթր հողով , աշխատանոց մը եւ պտղատու ծառեր: Կայ նաեւ անջատ բնակուած տուն մը : Դիւրամատչելի պայմաններ, գրել եւ ժամադրուիլ հետեւեալ հասցէին ·—

Պ · Կարապետեան, 25, Րիւ Հայկ Թըպիրեան, Պանեէօ, (Սէն):





## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ
Հ · Յ · Դ · ԱՐՂՈՒԹԵԱՆ ԽՈՒՄԲԻ, Ն ·ՍԵՐՈՒՆԴԻ եւ ԿԱՊ · ԽԱՉԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

ԿԸ ԽՕՍԻ Կ. ՄԵՀԵԱՆ

Այս Շաբաթ, ժամը 21ին, Եկեղեցիին սրահը

Նիւթ ·— «Արտասահմանի Հայութեան մտահոգութիւնները եւ առաջադրութիւնները »:

Խօսք կը տրուի ներկաներուն :



## 30ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԵԱՆ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, Մարտ 5, կէս օրէ վերջ ժամը 2·30ին

**Salle de la Chimie**

28 bis, Rue St.-Dominique, Métro Invalides

Մասնակցութեամբ Փարիզի շրջանի ֆրանսական եւ օտար սկաուտներուն , նախկին Հայ արիներուն, եւ Փարիզի շրջանի սկաուտներու եւ գայլիկներուն: Թատերական ներկայացումներ, հայկական պարեր եւ երգեր, սկաուտական ներկայացումներ, արտասանութիւն, եւ խաղեր, հայ Արիներու եւ գայլիկներուն կողմէ :

Պիւֆէ, ցուցադրութիւն — Մուտք 5 եւ 3 Ն · Ֆ ·

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Ընկեր Գեղամ Խոսրովեանէ (Մարսէյլ) երկու հարիւր Ն. Ֆ.։*

### ԼԻՈՆ
### ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՊԱՇՏՕՆ

*Այս Կիրակի օր, ժամը ճիշդ 10ին հոգեհանգստեան պատարագ պիտի մատուցուի եւ պաշտօն պիտի կատարուի՝* ԳԵՐՅԱՐԳԵԼԻ ՏԷՐ ՊՕՂՈՍ Ծ. Վ. ԱՐԻՍԻ *մահուան քառասունքին առթիւ, Վարդաբանի տիրամօր եկեղեցիին մէջ, 83 Լուի Պլան փողոց, Լիոն։*

*Այդ անհետացած ազգային գործիչին, որբերու հօր, Նոր Մարաշի բարերարին, Պուրճ Համմուտի քաղաքապետին ու Զմմառեան միաբանութեան նախկին մեծաւորին յիշատակը յարգողներէն եւ մանաւանդ Լիոնի ու Լիոնի շրջանը գտնուող իր հին ու ներկայիս չափահաս որբերէն կը խնդրուի ներկայ ըլլալ։*

*Ոչ մէկ հրաւէր ղրկուած ըլլալով, կը խնդրուի ներկայ ազդը իբրեւ այդ նկատել։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Լեւոն Գէորգի Խշլաշճեան, ծնած Երեւան 1922ին, լուր չկայ 1941ի պատերազմէն ի վեր։ Հօրը անունը՝ Գէորգ, Էրզրումի նահանգի Քղի գաւառի Հաղտուն գիւղէն, մայրը Եւգինէ, բնիկ վանեցի (Այգեստան)։*

*Լուր ունեցողներէն տեղեկացնել քրոջը՝ Բերսաբէ Համբարձումեան, 42 Փողոց, 46 տուն, Արաբկիր, Երեւան (Խորհ. Միութիւն)։*

×

*Այրի Տիկին Մարիամ Ոսկանեան կը փնտռէ իր եղբօր զաւակը Հրանտ Յովհաննէսեան, ծնեալ 1920ին, Կ. Պոլիս Միջագիւղ, որ վերջին ընդհ. պատերազմին, Լենինականէն զինուոր եղած է եւ այժմ հետքը կորսուած է։ Կ՚ենթադրուի թէ ողջ է, իր հօրը անունը Յակոբ, մօրը անունը Արշալոյս, քրոջ անունը Տիգրանուհի Յովհաննէսեան։ Կը խնդրուի տեղեկացնել զինքը ճանչցողներէն, Տիկին Մարիամ Ոսկանեանի,*

9, Rue de Petrograd. Alfortville

*Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել։*

×

*Յակոբեան Սանդուխտ Քերոփի, Էջմիածին՝ Բաղրամեան փողոց թիւ 85 տուն, կը փնտռէ.—*

*Ա) Յակոբեան Աղատ Նազարի, Մուշ՝ Պուլանըխ Ապրի գիւղէն, կորսուած Էջմիածին, 1920ին։*

*Բ) Յովհաննէսեան Արամ Յակոբի, Մուշ՝ Պուլանըխ Ապրի գիւղէն։*

×

*Արտաշէս Յովհաննէսի Տվըրեան, Թուրքիոյ Իզմիտ՝ Ասլանպէկ գիւղէն, կը փնտռէ իր եղբայրը Մինաս Յովհաննէսեան Տվըրեան, կորսուած 1915ին՝ 7 տարեկան հասակին։ Փնտռողին հասցէն է՝ թիւ 4 Գրողների փողոց, Երեւան։*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած թատերական ներկայացում մը՝

**ԿԻՐԱԿԻ ՄԱՐՏ 5**

կէսօրէ ետք ժամը 3.30ին

Կը ներկայացուին

ԹԷՈԴՈՐ ՍԱԼՀՈՒՆԻ
Ողբերգութիւն չորս արար

LE COLIS DE Mr. DOMINIQUE
Զաւեշտ մէկ արար

ԵՐԿՈՒ ՀՆԱԿԱՐԿԱՏՆԵՐԸ
Զաւեշտ մէկ արար

*Միջնարարին՝ արտասանութիւններ*
*Սիրով կը հրաւիրուին բոլոր ազգայինները։*

ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ
ԺՈՂՈՎՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ

*Այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը 4.30ին, Հայկական ծէսով պատարագ Անիէռի Սէնթ-Ժընըվիեւ մատրան մէջ։*
19, Rue de la Station, ASNIERES.

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տէր եւ Տիկին Արշակ Հայկազեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Օննիկ Հայկազեան (Մարսէյլ), խորին շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք գրաւոր կամ անձամբ ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր՝ եւ կեսուր մօր՝* ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԵՐԱՆՈՒՀԻ ՀԱՅԿԱԶԵԱՆԻ *մահուան առթիւ։*
279, Շըմէն Սէն Ժիւլիէն, Պօմոն։

ԱՐԵՒԱԳԱԼ ԱՌՆՈՒՎԻԼԻ ՄԷՋ

*Այս Կիրակի առաւօտ ժամերգութիւն և Արեւագալի արարողութիւն։*

*Պիտի նախագահէ եւ քարոզէ Հայրապետական պատուիրակ* ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ։

*Կը խնդրուի հաւատացեալ յարգոյ հասարակութենէն ներկայ գտնուիլ։*

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*Վիէնի մէջ, կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.-ի կողմէ, այս Կիրակի Սէրքըլ Կաթոլիք սրահին մէջ, ժամը երեքին։*

*Մեծ պատրաստութեամբ, կը ներկայացուի «ԿՈՌՆԱԿ»ը, ողբերգ. ? արարով։ Հեղ. Մկրտիչ Պէշիկթաշլեան, ղեկավարութեամբ եւ դերակատարութեամբ* Սարգիս Քէփենէկեանի *եւ իր խումբին։*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՏ 12ԻՆ

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեէօ Քաշանի խումբին գեղարուեստական երեկոյթը, ժամը 17էն 24։*

## ՅԻՇԱՏԱԿԻ ԵՐԵԿՈՅ
## ՄԻՀՐԱՆ ՀԵՐԱՐՏԵԱՆԻ

*Մահուան քառասունքին առթիւ, 11 Մարտ, Շաբաթ երեկոյ ժամը 9ին Մշակոյթի տան Թէհլիրեան սրահին մէջ, 17* Րիւ Պլէօ, Փարիզ (9), մէթրօ Քատէ։

*Կազմակերպուած Ուրֆայի Հայր. Միութեան կողմէ։*

*Նախագահ՝* ՍԱՐԳԻՍ ԵՕԹՆԵՂԲԱՅՐԵԱՆ

*Կը խօսին՝* ՅԱԿՈԲ ՀԻՍԱՅԵԱՆ *եւ* ԱՇՈՏ ԽՍԱՀԱԿԵԱՆ

Տիկին Լուսին Էմրիեան (*երգ*), Պ. Լեւոն Մոմճեան (*երգ*), Պ. Երուանդ Գրիգորեան (*արտասանութիւն*)։

Տիկին Պարգեւուհի Պետրոսեան (*արտասանութիւն*)։

## Հ. Յ. Դ.
ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 20.30ին, Յոյներու սրահը, 5 Րիւ Պռնֆուա։ Խիստ կարեւոր օրակարգ։*

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ-Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, սովորական հաւաքավայրը։*

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ
*ՇԱՒԻԼԻ ՄԷՋ*

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ
Հ. Յ. Դ. ԱՐՂՈՒԹԵԱՆ ԽՈՒՄԲԻ, Ն. ՍԵՐՈՒՆԴԻ ԵՒ ԿԱՊ. ԽԱՉԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

**ԿԸ ԽՕՍԻ Կ. ՄԵՀԵԱՆ**

Այս Շաբաթ, ժամը 21ին, Եկեղեցիին սրահը

*Նիւթ.—* «Արտասահմանի Հայութեան մտահոգութիւնները եւ առաջադրութիւնները»։

*Խօսք կը տրուի ներկաներուն։*

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նախաձեռնութեամբ Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղին
կիրակի, Մարտ 5, ժամը 18էն 24

**Salons Lutetia**
**43, Bd. Raspail**

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ.—

**ՊԵՌՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆԻ**
Ծանօթ նուագախումբը

ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐ ԵՒ ԵՐԳ

*ՊԻՒՖԷ, ՃՈԽ ԵՒ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ*

Ուսանողներու մուտքը զեղչով։ Ձեր սեղանները վերապահել հեռաձայնելով՝

CLI. 17-74 *կամ* AVR. 78-34

Սեղանները վերապահուած են միայն մինչեւ ժամը 20։

## 30ԱՄԵԱՅ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ
ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԵԱՆ ՇՐՋԱՆԻ

կիրակի, Մարտ 5, կէս օրէ վերջ ժամը 2.30ին

**Salle de la Chimie**

28 bis, Rue St.-Dominique, Métro Invalides

*Մասնակցութեամբ Փարիզի շրջանի ֆրանսական եւ օտար սկաուտներուն, նախկին հայ արիներուն, եւ Փարիզի շրջանի սկաուտներու եւ գայլիկներուն։*

Թատերական ներկայացումներ, հայկական պարեր եւ երգեր, սկաուտական ներկայացումներ, արտասանութիւն, եւ խաղեր, հայ Արիներու եւ գայլիկներուն կողմէ։

*Պիւֆէ, ցուցադրութիւն* Մուտք 5 եւ 3 Ն. Ֆ.

*ՄԱՐՍԷՅԼ*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այրի Տիկին Աղնիւ Քէսթէքեան եւ ազգականները կը ծանուցանեն թէ այս Կիրակի առաւօտ՝ Մարսէյլի Ս. Սահակ Մեսրոպ Մայր Եկեղեցւոյ մէջ (Փրատօ), հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, իրենց ողբացեալ ամուսինին եւ ազգականին՝*

*ՎԱՀԱՆ ՔԷՍԹԷՔԵԱՆԻ*

*մահուան քառասունքին առթիւ:*

*Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները :*

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

Կիրակի, Մարտ 12, ժամը 14·30ին
*Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ*

47, RUE DES ECOLES

*Ի նպաստ* Սէնթ – Իլէր տիւ – Թուվէի *ուսանողներու բուժարանին :*

*Բարձր հովանաւորութեամբ՝*

*ԺԱՆ ՍԱՐԱՅԻ*

*Փարիզի Համալսարանի վերատեսուչ*

*Կը նախագահէ՝*

*ՏԻԿԻՆ ԺԱՆ ՍԱՐԱՅ*

*Կը մասնակցին՝*

*Լուլթիս Տէ Լուս (Սպանիա), Անճալի Տէվի (Հնդկաստան), Էլվուտ Փեթերսըն (Միացեալ Նահանգներ), Էթսուքօ Թաքանօ (Ճափոն), ուսանողական ժողովրդական խումբեր եւ գեղարուեստական կազմակերպութիւններ կը ներկայացնեն իրենց երկիրները .—*

*ՀԱՅԱՍՏԱՆ*

*Պրազիլ, Կովկաս, Սպանիա, Միացեալ Նահանգներ, Հունգարիա, Հնդկաստան, Իսրայէլ, Ճափոն, Լիթուանիա, Մատակասքար, Մեքսիկա, Լեհաստան, Վիէթնամ :*

*Հայկական բաժինը կը ներկայացնեն .—*

*ՍՕՍԻ ԽՈՒՄԲԸ*

*ՆԱՅԻՐԻ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ*

*եւ*

*ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ*

*ՏՈՄՍԵՐԸ .—* 5, 4, 3, 2 Ն. Ֆ.

*Դիմել Սորպոնի ղնապաններուն :*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Հայաստանէն կը փնտռուի Հրաչ Մխիթարեան (Ճանկի գիւղացի) : Կը կարծուի թէ Լիոն կը գտնուի : Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի գրել Պ. Սարգիսեանի,*

1, Rue Chevet de l'Eglise, SAINT-DENIS (Seine)

*Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել :*



ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՏ 12ԻՆ

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանթէօ Քաշանի խումբին պարանցիկ երեկոյթը, ժամը 17էն 24:*

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԼԻՈՆ .— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 20·30ին, Յոյներու սրահը,* ,5 Րիւ Պոնֆուա: *Խիստ կարեւոր օրակարգ :*

*ՓԱՐԻԶ .— Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ – Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30–ին, սովորական հաւաքավայրը :*

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Աշակերտներուն կողմէ կազմակերպուած թատերական ներկայացում մը՝

**ԿԻՐԱԿԻ ՄԱՐՏ 5**

Կէսօրէ ետք ժամը 3·30ին

Կը ներկայացուին

ԹԷՈԴՈՐ ՍԱԼՀՈՒՆԻ

Ողբերգութիւն չորս արար

LE COLIS DE Mr. DOMINIQUE

Զաւեշտ մէկ արար

ԵՐԿՈՒ ՀՆԱԿԱՐԿԱՏՆԵՐԸ

Զաւեշտ մէկ արար

*Միջնարարին՝ արտասանութիւններ Սիրով կը հրաւիրուին բոլոր ազգայինները :*

ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԺՈՂՈՎՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ

*Այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը 4·30–ին, Հայկական ծէսով պատարագ Անիէռի Սէնթ – Ժընըվիեւ մատրան մէջ :*

19, Rue de la Station, ASNIERES.

ԱՐԵՒԱԳԱԼ ԱՌՆՈՒՎԻԼԻ ՄԷՋ

*Այս Կիրակի առաւօտ ժամերգութիւն և Արեւագալի արարողութիւն:*

*Պիտի նախագահէ եւ քարոզէ Հայրապետական պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ :*

*Կը խնդրուի հաւատացեալ յարգոյ հասարակութենէն ներկայ գտնուիլ :*

*ԼԻՈՆ*

*ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՊԱՇՏՕՆ*

*Այս Կիրակի օր, ժամը ճիշդ 10ին հոգեհանգստեան պատարագ պիտի մատուցուի եւ պաշտօն պիտի կատարուի՝*

ԳԵՐՅԱՐԳԵԼԻ ՏԷՐ ՊՕՂՈՍ Ծ. Վ. ԱՐԻՍԻ

*մահուան քառասունքին առթիւ, Վարդարանի տիրամօր եկեղեցիին մէջ, 83 Լուի Պլան փողոց, Լիոն :*

*Այդ անհետացած ազգային գործիչին, որբերու հօր, Նոր Մարաշի բարերարին, Պուրճ Համմուտի քաղաքապետին ու Զմմառեան միաբանութեան նախկին մեծաւորին յիշատակը յարգողներէն եւ մանաւանդ Լիոնի ու Լիոնի շրջանը գտնուող իր հին ու ներկայիս չափահաս որբերէն կը խնդրուի ներկայ ըլլալ :*

*Ոչ մէկ հրաւէր ղրկուած ըլլալով, կը խնդրուի ներկայ ազգը իբրեւ այդ նկատել :*


Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)


*ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ*

*Վիէնի մէջ, կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.-ի կողմէ, այս Կիրակի Սէրքըլ Կաթոլիք սրահին մէջ, ժամը երեքին :*

*Մեծ պատրաստութեամբ, կը ներկայացուի «ԿՌՈՒՆԱԿ»ը, ողբերգ. ? արարով: Հեղ. Մկրտիչ Պէշիկթաշլեան, ղեկավարութեամբ եւ դերակատարութեամբ* Սարգիս Քէփէնէկեանի *եւ իր խումբին :*

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

*ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ*

*ՊԱՆԹԷՕ .— Երեքշաբթի (Մարտ 7ին): Շավիլ .— Հինգշաբթի (Մարտ 9): Սոյն ժողովներուն ներկայ կ'ըլլան կեդրոնական Վարչութեան ներկայացուցիչները: Կարեւոր օրակարգ եւ պարտաւորիչ ներկայութիւն :*

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*ՇԱՒԻԼԻ ՄԷՋ*

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ

Հ. Յ. Դ. ԱՐՂՈՒԹԵԱՆ ԽՈՒՄԲԻ, Ն. ՍԵՐՈՒՆԴԻ եւ ԿԱՊ. ԽԱՉԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

**ԿԸ ԽՕՍԻ Կ. ՄԵՀԵԱՆ**

Այս Շաբաթ, ժամը 21ին, Եկեղեցիին սրահը

*Նիւթ .—* «Արտասահմանի Հայութեան մտահոգութիւնները եւ առաջադրութիւնները »:

*Խօսք կը տրուի ներկաներուն :*

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նախաձեռնութեամբ Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղին

Կիրակի, Մարտ 5, ժամը 18էն 24

**Salons Lutetia**

**43, Bd. Raspail**

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ .—

ՊԵՌՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆԻ

Ծանօթ նուագախումբը

ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐ ԵՒ ԵՐԳ

*ՊԻՒՖԷ, ՃՈԽ ԵՒ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ*

Ուսանողներու մուտքը զեղչով : Ձեր սեղանները վերապահել հեռաձայնելով՝

CLI. 17-74 *կամ* AVR. 78-34

Սեղանները վերապահուած են միայն մինչեւ ժամը 20 :

## 30ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՏՕՆԱԽՄԲՈՒԹԻՒՆ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԵԱՆ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, Մարտ 5, կէս օրէ վերջ ժամը 2·30ին

**Salle de la Chimie**

28 bis, Rue St.-Dominique, Métro Invalides

*Մասնակցութեամբ Փարիզի շրջանի ֆրանսական եւ օտար սկաուտներուն, նախկին հայ արիներուն, եւ Փարիզի շրջանի սկաուտներու եւ գայլիկներուն:*

Թատերական ներկայացումներ, հայկական պարեր եւ երգեր, սկաուտական ներկայացումներ, արտասանութիւն, եւ խաղեր, հայ Արիներու եւ գայլիկներուն կողմէ :

*Պիւֆէ, ցուցադրութիւն* Մուտք 5 եւ 3 Ն. Ֆ.





ՉՈՐԵՔՇԱԲԹԻ ԳԻՇԵՐ, 29 ՄԱՐՏ, ԺԱՄԸ ՃԻՇԴ 9ԻՆ

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԹԱՏՐՈՆԸ

Սրահ Փօլ Ֆառալիք, 21, Ռիւ Իվ Թուտպք, 21

*Կը ներկայացնէ անդադար ժպիտ եւ խնդուք պատճառող ազգային կատակերգութիւնը՝*

## ՄՆԿԼՁԱԿՑԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

(3 արար)

Հեղինակ ԳՐԻԳՈՐ ՎԱՀԱՆ (*Հ. Բ. Ը. Մ.-ի Թատերադրական մրցման Ա. պսակաւոր*):

*Կը մասնակցին՝* Տիկին Հ. Խտրշեան – Լա Շասանեը, Տիկին Գրիգորեան, Օր. Հերա Տատուրեան, Պ. Պ. Գ. Տէրվիշեան, Ժ. Գըզըրեան, Ժագ Սթէֆանօ, Ա. Գմբէթեան եւ Օր. Ա. Գմբէթեան :

*Մուտքի սովորական գիներ, կեդրոնատեղի՝ Ա. Գմբէթեան (տպարան Արաքս)*

46, RUE RICHER, PARIS. TÉL. PRO. 05-73

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

*Լսարանին հերթական դասախօսութիւնը այս Ուրբաթ, ժամը 20·30ին, Սողոմոն Թէհլիրեան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, Մեթրօ Քատէ։*

*Դասախօս՝* ԾԱՏՈՒՐ ՊԷՐՊԷՐԵԱՆ։

*Նիւթը՝* «Հայ մշակոյթի հին ու նոր ճարտարապետները եւ մենք»։

*Մուտքը ազատ է։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։ Սրահին ջերմութիւնը ապահովուած է։*

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Ֆ. Կ. Խաչի երիտասարդուհիներու «Զաւօ Շանթ» խումբին դասախօսութիւնը այս Ուրբաթ, ժամը 20ին, Կապ. Խաչի դրասենեակին մէջ* (17 Րիւ Պլէօ)*։ Դասախօս՝* ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ – ՊՈՒՏԱՔԵԱՆ։

## ՄԵԾ ՊԱՀՔԸ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Մեծ Պահքի Միջինքին առթիւ տեղի կ'ունենայ հսկումի արարողութիւն, մասնաւոր մասնակցութեամբ Տէսինի Կրօնական Ընկերակցութեան վարչական անդամներուն, այս Երեքշաբթի ժամը 19ին։*

*Այս Շաբաթ ժամը 17ին մասնաւոր ժամերգութիւն Քառասուն Մանկանց տօնին առթիւ, ուր պիտի դրուին 40 կանթեղներ եւ հանգստաքար մասնաւոր նուիրատուութեամբ։*

## ՅԻՇԱՏԱԿԻ ԵՐԵԿՈՅ
## ՄԻՀՐԱՆ ՀԵՐԱՐՏԵԱՆԻ

*Մահուան քառասունքին առթիւ,* 11 *Մարտ, Շաբաթ երեկոյ ժամը 9ին Մշակոյթի տան Թէհլիրեան սրահին մէջ,* 17 Րիւ Պլէօ, Փարիզ (9), մէթրօ Քատէ։

*Կազմակերպուած Ուրֆայի Հայր. Միութեան կողմէ։*

*Նախագահ՝* ՍԱՐԳԻՍ ԵՕԹՆԵՂԲԱՅՐԵԱՆ

*Կը խօսին՝* ՅԱԿՈԲ ՀԻՍԱՅԵԱՆ *եւ* ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Տիկին Լուսին Էմրիեան (*երգ*), Պ. Լեւոն Մոմճեան (*երգ*), Պ. Երուանդ Գրիգորեան (*արտասանութիւն*)։

Տիկին Պարգեւուհի Պետրոսեան (*արտասանութիւն*)։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Այրի Տիկին Մարիամ Ոսկանեան կը փնտռէ իր եղբօր զաւակը Հրանտ Յովհաննէսեան, ծնեալ 1920ին, Կ. Պոլիս Միջագիւղ, որ վերջին ընդհ. պատերազմին, Լենինականէն զինուոր եղած է եւ այժմ հետքը կորսուած է։ Կ'ենթադրուի թէ ողջ է, իր հօրը անունը Յակոբ, մօրը անունը Արշալոյս, քրոջ անունը Տիգրանուհի Յովհաննէսեան։ Կը խնդրուի տեղեկացնել զինքը ճանչցողներէն, Տիկին Մարիամ Ոսկանեանի,*

9, Rue de Petrograd. Alfortville

*Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել։*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանը կ'առաջնորդուի պետական ուսումնական ծրագրով։ Եթէ ցարդ չէ կրցած բանալ Լիսէի բարձրագոյն կարգի դասարանները պատճառն այն է որ ցարդ չէ ունեցած բաւականաչափ ուսանողուհիներ այդ դասարաններուն համար։*

*Վարչութիւնը որոշած է ամէն ջանք ի գործ դնել որպէսզի ամբողջապէս իրագործուի լիսէի ծրագիրը իր վարժարանին մէջ, ուսուցչական համապատասխան կազմով, ցերեկօթիկ եւ գիշերօթիկ աշակերտութեամբ։*

*Հետեւաբար կոչ կ'ընէ բոլոր այն ծնողքներուն, որոնք կը փափաքին իրենց աղջիկները ղրկել լիսէի երկրորդ դասարանը* (Սէքոնտ Մոտէռն) *այժմէն իսկ դիմեն վարժարանի տնօրէնութեան արձանագրելու 1961 – 1962 տարեշրջանին համար։*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Կիւլպէնկեան Ֆոնտէն երկու հարիւր Ն. Ֆ. ի նպաստ իր հովանաւորած դպրոցին։*

×

*Նոյնպէս շնորհակալութեամբ ստացած է Տիկին Նոյեմի Նազարէթեանէ (Լանսէ) նոր մահացած իր մօր յիշատակին, քսան Ն. Ֆ. ի նպաստ մասնաճիւղին բարենպատակ գործերուն։*

×

*Լիոնի Եկեղեցաշէն յանձնախումբը շնորհակալութեամբ ստացաւ Փարիզէն Պ. Վահէ Զիլինկիրեանէ իր զոքանչ մօր հոգւոյն ի յիշատակ հազար Ն. Ֆ. Լիոնի եկեղեցւոյ շինութեան համար։*

*Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան։ Փարիզէն Տիկին Վեհանոյշ Զրբաշեանէ Յունուար ութի Լիոնի եկեղեցւոյ շինութեան ի նպաստ պարահանդէսին առթիւ յիսուն Ն. Ֆ.։*

*Լիոն Շարփէնէն Տէր եւ Տիկին Մուրատեան հանգուցեալ Մաննիկ Մաքսուեանի մահուան տարելիցին առթիւ 25 Ն. Ֆ.։ Եւ հանգ. Նարդուհի Հաճի Պօղոսեանի մահուան քառասունքին առթիւ 25 Ն. Ֆ. կը նուիրեն Լիոնի եկեղեցւոյ շինութեան։ Նահապետեան եղբարք իրենց մօր հանգուցեալ Մարգրիտ Նահապետեանի մահուան առթիւ կը նուիրեն հարիւր Ն. Ֆ., հանգուցեալ Մարգրիտ Նահապետեանի փափաքին համաձայն իր կողմէ զաւակները շինութեան կը նուիրեն նաեւ հարիւր Ն. Ֆ.։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Հայաստանէն կը փնտռուի Հրաչ Մխիթարեան (Ճանկի գիւղացի)։ Կը կարծուի թէ Լիոն կը գտնուի։ Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի գրել Պ. Սարգիսեանի,*

1, Rue Chevet de l'Eglise, SAINT-DENIS (Seine)

*Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել։*

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՊԱՆԵՕ.— Երեքշաբթի (Մարտ 7ին)։*
*Շավիլ.— Հինգշաբթի (Մարտ 9)։*
*Սոյն ժողովներուն ներկայ կ'ըլլան Կեդրոնական Վարչութեան ներկայացուցիչները։ Կարեւոր օրակարգ եւ պարտաւորիչ ներկայութիւն։*

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին, Քատէի վերնայարկը։*

*Պիտի ունկնդրուի Ամենայն Հայոց Վազգէն Ա. Կաթողիկոսի, անցեալ տարի Լիւթէսիայի սրահին մէջ խօսած ճառը (ձայնագրուած)։ Մուտքը ազատ է։*

## Հ. Յ. Դ.

*ՊԱՆԵՕ – ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Հինգշաբթի, ժամը 20·30ին, ծանօթ հաւաքատեղին։ Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը։*

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Հագուստի համար* մեքենանիսիէն *մը նոր* մոտէլներ *կարելու համար։ Կէս օրուան աշխատանք։ Լաւ վճարում։ Դիմել՝*

Այրի Տիկին Ալիս Զիլինկիրեան եւ զաւակը՝ Լիտիա, Տէր եւ Տիկին Յակոբ Ժամկոչեան եւ զաւակները, Պ. Կիրակոս Ժամկոչեան եւ զաւակները: Այրի Տիկին Եւա Թէմինեան, Տէր եւ Տիկին Սահակ Խաչատուրեան եւ զաւակը, Տէր եւ Տիկ. Ժորժ Շվարց եւ զաւակը, Պ. Մեսրոպ Մեսրոպեան եւ զաւակները, Թէմինեան, Փափազեան եւ Ասատուրեան ընտանիքները, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր, փեսին, քեռայրին եւ ազգականին՝

ՎԵՆՍԱՆ ԶԻԼԻՆԿԻՐԵԱՆԻ
(Մասիս Ժամկոչեան)

յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ Մարտ վեցին, իր բնակարանը՝ 33 Րիւ տը Թրէվիզ, Փարիզ (9):

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր, Հինգշաբթի (Մարտ 9) ժամը 10·30ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Պանեէօ – Փարիզիէնի գերեզմանատունը, ամփոփուելու համար ընտանեկան դամբարանը:

## ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ-ՀԱՇՈՒԵՑՈՅՑ ՍՏԱՑՈՂ ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Ներկայիս Յառաջի վարչութիւնը, կանոնաւորելու համար առկախ հաշիւները շրջաբերական – հաշուեցոյցեր կը ղրկէ իր այն բաժանորդներուն, որոնք իրենց հաշիւը չեն փակած մինչեւ 1960ի վերջը:

Այս իմաստով, ղրկուած շրջաբերականներու առաջին գումարը կը ներկայացնէ իրենց առկախ հաշիւը մինչեւ 1960 Դեկտեմբեր 31, ո՛ր ամսուն ալ սկսած ըլլայ իրենց բաժանորդագրութեան հաշիւը:

Ջերմապէս կը խնդրենք որ այս հաշուեցոյցը ստացող բաժանորդները անյապաղ պատասխանեն, կանոնաւորելու համար թէ՛ իրենց թէ՛ թերթիս վարչութեան հաշիւները:

Կանխայայտ շնորհակալութիւններով՝
« ՅԱՌԱՋ »Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Վալանսի Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերներ Վահէ Փարթամեանի եւ Բիւզանդ Բարէլեանի արկածալի մահուան առթիւ իրենց ընտանեկան պարագաներուն եւ ընկեր Յ. Պապիկեանի:

## Ա Յ Ց

Վալանսի Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն այց մը կազմակերպած է ողբացեալ ԸՆԿԵՐ ԽՈՐԷՆ ՍԻՒՐՄԷԼԵԱՆԻ գերեզմանին վրայ (Օպընա – Արտէշ), այս կիրակի առաւօտ:

Մեկնումի ժամ՝ 9ին, Ահարոնեան ակումբէն: Կը հրաւիրուին ողբացեալ ընկերոջ յիշատակը յարգողները: Ներկայ կ'ըլլայ Վալանսի քահանան:

## ՅԻՇԱՏԱԿԻ ԵՐԵԿՈՅ ՄԻՀՐԱՆ ՀԵՐԱՐՏԵԱՆԻ

Մահուան քառասունքին առթիւ, 11 Մարտ, Շաբաթ երեկոյ ժամը 9ին Մշակոյթի տան Թէհլիրեան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, Փարիզ (9), մէթրօ Քատէ:

Կազմակերպուած Ուրֆայի Հայր. Միութեան կողմէ:

Նախագահ՝ ՍԱՐԳԻՍ ԵՕԹՆԵՂԲԱՅՐԵԱՆ

Կը խօսին՝ ՅԱԿՈԲ ՀԻՍԱՅԵԱՆ եւ ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Տիկին Լուսին Էմրիեան (երգ), Պ. Լեւոն Մոմճեան (երգ), Պ. Երուանդ Գրիգորեան (արտասանութիւն):

Ժիլոմէն Իւրսիւլա (ջութակ):

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Պ. Պետրոս Պալթայեան կը փնտռէ իր եղբայրը՝ Գէորգ Պալթայեան (ընիկ Մարմաճիկցի), գեղագործ (եղած է Պոլիս եւ Եգիպտոս): Եգիպտոսէն Ֆրանսա անցած է, տեղեկացնել՝ Պետրոս Պալթայեանի,

189, BD DE LA MADELEINE, NICE

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Լսարանին հերթական դասախօսութիւնը այս Ուրբաթ, ժամը 20·30ին, Սողոմոն Թէհլիրեան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, Մեթրօ Քատէ:

Դասախօս՝ ԾԱՏՈՒՐ ՊԷՐՊԷՐԵԱՆ:

Նիւթը՝ «Հայ մշակոյթի հին ու նոր ճարտարապետները եւ մենք»:

Մուտքը ազատ է: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ: Սրահին ջերմութիւնը ապահովուած է:

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

Կիրակի, Մարտ 12, ժամը 14·30ին
Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ

47, RUE DES ECOLES

Ի նպաստ Սէնթ – Իլէր տիւ – Թուվէի ուսանողներու բուժարանին:

Բարձր հովանաւորութեամբ՝
ԺԱՆ ՍԱՐԱՅԻ
Փարիզի Համալսարանի վերատեսուչ

Կը նախագահէ՝
ՏԻԿԻՆ ԺԱՆ ՍԱՐԱՅ

Կը մասնակցին՝

Լուիս Տէ Լուս (Սպանիա), Անճալի Տէվի (Հնդկաստան), Էլվուտ Փեթերսըն (Միացեալ Նահանգներ), Էթսուքօ Թաքանօ (Ճափոն), ուսանողական ժողովրդական խումբեր եւ գեղարուեստական կազմակերպութիւններ կը ներկայացնեն իրենց երկիրները.—

ՀԱՅԱՍՏԱՆ

Պրազիլ, Կովկաս, Սպանիա, Միացեալ Նահանգներ, Հունգարիա, Հնդկաստան, Իսրայէլ, Ճափոն, Լիթուանիա, Մատակասքար, Մեքսիկա, Լեհաստան, Վիէթնամ:

Հայկական բաժինը կը ներկայացնեն.—
ՍՕՍԻ ԽՈՒՄԲԸ
եւ
ՑԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ՏՈՄՍԵՐԸ.— 5, 4, 3, 2 Ն. Ֆ.

Դիմել Սորպոնի ղոնապաններուն:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Պօմոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները.—

Տէր եւ Տիկին Կ. Կարապետեանէ քսան Ն. Ֆ. դպրոցին, Տիկին Շ. Թօնկուրեանէ տասը Ն. Ֆ. Կապոյտ Խաչին: Տիկին Մաննիկ Սալըրեանի տխուր մահուան առթիւ Պ. Հայկ Սալըրեանէ քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Սերժ Սարգիսեանէ քսան Ն. Ֆ. եւ Տիկին Մ. Ռէյիզեանէ տասը Ն. Ֆ.: Նոյնպէս Լաֆճեան ընտանիքէն՝ իրենց մօր Տիկին Ա. Լաֆճեանի մահուան քառասունքին առթիւ երեսուն Ն. Ֆ. Կ. Խաչին եւ քսան Ն. Ֆ. Պօմոնի աղքատներուն: Ումն տասը Ն. Ֆ. դպրոցին:

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի երիտասարդուհիներու «Զաւօ Շանթ» խումբին դասախօսութիւնը այս Ուրբաթ, ժամը 20ին, Կապ. Խաչի գրասենեակին մէջ (17 Րիւ Պլէօ): Դասախօս՝ ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ – ՊՈՒՏԱՔԵԱՆ:

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Լիոնի նորընտիր կրթական մարմնոյ կողմէ:

Պիտի խօսի Տէսինի հոգեւոր հովիւ
ՏԷՐ ՎԱՐԱԳ ՔՀՆՑ. ԱԻԱԳԵԱՆ

Նիւթ՝ «Հայ Առաքելական Եկեղեցւոյ ծագումն ու զարգացումը»:

Այս Շաբաթ երեկոյ ժամը 20·30ին, Լիոնի եկեղեցւոյ մեծ սրահին մէջ:

Կը հրաւիրուի Լիոնահայ հասարակութիւնը ներկայ ըլլալու այս շահեկան դասախօսութեան:

Մուտքը ազատ է:



## Կ'ՈՒԶՈՒԻ

Հագուստի համար մեքենիսիէն մը նոր մոտէլներ կարելու համար: Կէս օրուան աշխատանք: Լաւ վճարում: Դիմել՝

DARONIAN
115, Rue d'Aboukir PARIS 2·
CEN. 20·86

## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Տիկին Արթինեանի խանութը ծախուած ըլլալով, Յառաջ այսուհետեւ կը ծախուի.—

44, Rue Julien Lacroix

## ԽՆՋՈՅՔ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Վիէնի Հայ Ազգ. Միութեան վարչութիւնը կազմակերպած է ընտանեկան խնջոյք մը Վարդանանցի առթիւ, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Օհանջանեան սրահը:

Ներկայ պիտի ըլլայ նաեւ Քէչէճեան վարդապետը:

Սիրով կը հրաւիրուի Վիէնի Հայութիւնը անխտիր:

Մուտքը ազատ է:

## Հ. Յ. Դ.

ՊԱՆԵԷՕ – ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Հինգշաբթի, ժամը 20·30ին, ծանօթ հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փօթօրէկ խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 20·30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

ԱԼՖՕՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:







Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Գառնիկ Կոստանեան իր եղբօր* Եղիա Կոստանեանի *մահուան (Երեւան) առթիւ քսան Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին:*

*Ստանալ «Յառաջ»էն:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Փարիզի Աղքատախնամի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Այրի Տիկին Ոդինէ Փալայեան, իր ազգականին Աղաւնի Փանոսեանի մահուան առթիւ, Մոնմորանսիի ծերանոցին յիսուն Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Ա. Հարէնց երեսուն եւ Պ. Պերճ Զազըճեան հարիւր, ողբացեալ Տիկին Սաթենիկ Խաչատուրեանի մահուան առթիւ: Պ. Պ. Մկրտիչ Զարիկեան քառասուն, Յարութիւն Սարաճեան քսան, Ս. Արզումանեան քառասուն, Հաճի-Բիւզանդ Քէօթահիալեան, իր Թոռին զինուորութենէ վերադարձին առթիւ հինգ Ն. Ֆ.:*

## *ՀՐԱՒԷՐ՝ ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ*

*Պօմոնի Թաղ. Խորհուրդը եւ Պալաքեան Սրբազանի Դամբարան-Շիրիմի Կառուցման յանձնախումբը, Թօղաթցիներու Հայր. Միութիւնները պատիւ ունին ծանուցանելու Մարսէյլի եւ Ֆրանսայի բոլոր քաղաքներու հայ հաւատացեալ ժողովուրդին թէ՝ յառաջիկայ Մարտ 17ի Ուրբաթ առաւօտ ժամը 8.30ին, Սէն Փիէռի մեծ գերեզմանատան մէջ, հովանաւորութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ նախագահութեամբ Հայր. Պատուիրակ Գերշ. Տ. Սերովբէ Եպիսկ.ի եւ Մարսէյլի քահանայից դասուն մասնակցութեամբ տեղի պիտի ունենայ հոգելոյս*

*ՊԱԼԱՔԵԱՆ ՍՐԲԱԶԱՆԻ*

*եւ վեց քահանայ հայրերուն վերաթաղումը նոր դամբարանին մէջ: Իսկ Մարտ 19ի Կիրակի առաւօտ, Հայրապ. Պատուիրակը պիտի պատարագէ Պօմոնի Ս. Գր. Լուս. եկեղեցւոյ մէջ եւ քարոզէ: Յաւարտ պատարագի պիտի կատարուի հանդիսաւոր հոգեհանգիստ: Կէսօրէ վերջ ժամը 3.30-ին, տեղի պիտի ունենայ Ս. Փիէռի նորակերտ դամբարան-շիրմին բացման հանդէսը՝ հովանաւորութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ նախագահութեամբ պատուիրակ Ս. Հօր եւ բոլոր քահանայ հայրերու եւ Պօմոնի Դպրաց Դասու եւ այլ դպիրներու մասնակցութեամբ: Ուստի, սիրով կը հրաւիրուին Մարսէյլի, շրջակայքի եւ այլ քաղաքներու բոլոր հայրենակիցները՝ ներկայ ըլլալ թէ Ս. պատարագին եւ թէ նորակերտ շիրմին հանդիսաւոր բացման, ապրելու եւ ապրեցնելու համար յիշատակը՝*

*ՇԻՆԱՐԱՐ ԱՌԱՋՆՈՐԴ ՀՈԳԵԼՈՅՍ*
*ՊԱԼԱՔԵԱՆ ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿ.Ի*

*եւ գործակից եօթը քահանայ հայրերու:*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

*ԼՈՅՍ ՏԵՍԱՆ*

## ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ
## ԼՈՒՍԵՂԷՆ ՇԻՐԻՄՆԵՐ

ԳՐԱԿԱՆ ԴԻՄԱՍՏՈՒԵՐՆԵՐ
ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ
*Գին* 10 *Ն. Ֆ.*

*Կը ներկայացուին Ա. Ահարոնեան, Ռուբէն, Լեւոն Շանթ, Ն. Աղբալեան, Յ. Օշական, Շ. Միսաքեան, Թորգոմ Պատրիարք, Բաբգէն Կաթողիկոս, Յակոբ Մալաքեան, Արշակ Զօպանեան, Ե. Տէր-Անդրէասեան, Աւ. Իսահակեան, Գուրգէն Ալէմշահ, Հրանդ Ալեանաք: Պատկերազարդուած 16 նկարներով:*

×

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔ. ՕՐՄԱՆԵԱՆ
## ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՒԹԵԱՆ

*Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ*

ԵՐԱԺՇՏԱՊԵՏ
ՅԱԿՈԲՈՍ ԱՅՎԱԶԵԱՆ

*Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ*

*Վերջին այս երկուքը մէկ հատորով, պատկերազարդ:*

Շքեղ տպագրութիւն 7.50 Ն. Ֆ.
Պարզ տպագրութիւն 5 Ն. Ֆ.

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ՄԱՐՍԷՅԼ*

*Նախաձեռնութեամբ Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան:*

*ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ՝ ԱՊՐԻԼ* 8

Դաշնակահար

**ՌԱՖՖԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ**

*կուտայ բացառիկ նուագահանդէս մը Սփլանտիտի սրահներուն մէջ:*

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄ

ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ ԵՒ ԿՈՉ
ԹԵԿՆԱԾՈՒԹԵԱՆ

*Փարիզի Հայ Աղք. Ընկերակցութեան ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ Հինգշաբթի 23 ՄԱՐՏ ժամը 20.30ին, 32 Րիւ* տը Թրէվիզ:

*Կանոնագրի թիւ հինգ յօդուածին համաձայն վարչութեան մէկ երրորդը (հինգ անդամ) նորոգելի ըլլալով, ընկերակցութիւնը կոչ կ'ընէ իր անդամներէն անոնց որոնք կը փափաքին մասնակցիլ վարչութեան:*

*Թեկնածութիւնները պարտին Աղքատախնամին գրասենեակը հասնիլ ամենէն ուշը Մարտ 9ին:*

*Առ այդ, փափաքողները պէտք է ընթեռնլի կերպով գրեն, տալով իրենց անունը, մականունը եւ հասցէն:*

*Թեկնածու կրնան ըլլալ միայն այն անդամները որոնք իրենց անդամավճարները կանոնաւորապէս վճարած են երեք տարիէ ի վեր:*

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ

*ԿԸ ՏՕՆՈՒԻ*

Փարիզի մէջ, Մարտ 18ին, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս 10րդ թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

72, Rue du Faubourg Saint-Martin, Métros : Château d'Eau et Gare de l'Est

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. Ժ. ԴԱՏԱՒՈՐԵԱՆ
ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

*Գեղարուեստական խնամուած բաժին, կէս գիշերէն կը սկսին եւրոպ. պարերը:*

**Orchestre Cubain LUIS GODY**

*Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով* Մուտք 5 Ն. Ֆ.

ՇՐՋԱՆԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ ԻՐ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՎ
ՄԵԾ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՄԲ ԿԸ ՏՕՆԷ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

*ԿԻՐԱԿԻ ԱՊՐԻԼ 9ԻՆ, ԺԱՄԸ 15ԻՆ*
SALLE DE LA CHIMIE
28 bis, Rue Saint-Dominique

Կը նախագահէ ՏԻԿԻՆ Հ. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ

Կը բանախօսէ ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Փարիզի սիրուած եւ գնահատուած լաւագոյն ուժերը:*

ԱՓՐԻԿԵԱՆԻ ՔԱՌԵԱԿԸ
(*Հայկական ժողովրդական երգեր*)

Պ. Մկրտիչ Պօղոսեան (*թենոր*), Պ. Արա Սերոբեան (պարիթոն),
Օր. Ա. Գաբոյեան (*արտասան.*) Պ. Արա Գրիգորեան (*արտ.*)

Յայտնի ջութակահար
GERARD JARRY
(Premier Prix du Concours Marguerite Long–Jacques Thibaud 1954)

Դաշնակով կ'ընկերանայ
Mme FRANÇOISE LE GONIDES-MAURON

*Պիտի նուագէ Ա. Խաչատուրեանի, Գ. Մ. Ալէմշահի եւ այլ հեղինակներու գործերը:*

Մուտք՝ 5 եւ 3 Ն. Ֆ.

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

*Այս Կիրակի ժամը 10·30ին Հանդստեան ձայնաւոր պատարագ Գերպ. Գրիգոր Պահապանեանի հոգւոյն համար :*

*Կը խնդրուի Փարիզի անդրանիկ Առաջնորդ Արքեպիսկոպոսին յիշատակը յարգողներէն՝ ներկայ գտնուիլ ու այս աղօթքիր հրաւէր նկատել :*

*ՆՈՒԷՐՆԵՐ.—* Հանգուցեալ Տէր Ադդէ ճինյ. փայլակեանի յարգելի յիշատակին՝ Տէր եւ Տիկին Ս. Տիրեան տասը Ն. Ֆ. կը նուիրեն Կապ. Խաչի Անկէնի մասնաճիւղին :

### ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

## Յ. ԹՈՐՈՍԵԱՆ

Գծագրութիւն եւ իւղաներկ

*Մարտ 10էն 20, ամէն օր ժամը 14էն 19 :*

**DANS LES SALONS DE L'U. G. A. B.**

11, Square Alboni, Paris (16e)

### ՀՐԱՒԷՐ՝ ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ

*Պօմոնի Թաղ. Խորհուրդը եւ Պալաքեան Սրբազանի Դամբարան – Շիրիմի Կառուցման յանձնախումբը, Թոգաթցիներու Հայր. Միութիւնները պատիւ ունին ծանուցանելու Մարսէյլի եւ Ֆրանսայի բոլոր քաղաքներու հայ հաւատացեալ ժողովուրդին թէ՝ յառաջիկայ Մարտ 17ի Ուրբաթ առաւօտ ժամը 8·30ին, Սէն Փիէռի մեծ գերեզմանատան մէջ, հովանաւորութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ նախագահութեամբ Հայր. Պատուիրակ Գերշ. Տ. Սերովբէ Եպիսկ.ի եւ Մարսէյլի քահանայից դասուն մասնակցութեամբ տեղի պիտի ունենայ հոգեւոյս*

*ՊԱԼԱՔԵԱՆ ՍՐԲԱԶԱՆԻ*

*եւ վեց քահանայ հայրերուն վերաթաղումը նոր դամբարանին մէջ: Իսկ Մարտ 19ի Կիրակի առաւօտ, Հայրապ. Պատուիրակը պիտի պատարագէ Պօմոնի Ս. Գր. Լուս. եկեղեցւոյ մէջ եւ քարոզէ: Յաւարտ պատարագի պիտի կատարուի հանդիսաւոր հոգեհանգիստ: Կէսօրէ վերջ ժամը 3·30ին, տեղի պիտի ունենայ Ս. Փիէռի նորակերտ դամբարան – շիրմին բացման հանդէսը՝ հովանաւորութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ նախագահութեամբ պատուիրակ Ս. Հօր եւ բոլոր քահանայ հայրերու եւ Պօմոնի Դպրաց Դասու եւ այլ դպիրներու մասնակցութեամբ: Ուստի, սիրով կը հրաւիրուին Մարսէյլի, շրջակայքի եւ այլ քաղաքներու բոլոր հայրենակիցները՝ ներկայ ըլլալ թէ Ս. պատարագին եւ թէ նորակերտ շիրմին հանդիսաւոր բացման, ապրելու եւ ապրեցնելու համար յիշատակը՝*

*ՇԻՆԱՐԱՐ ԱՌԱՋՆՈՐԴ ՀՈԳԵԼՈՅՍ*

*ՊԱԼԱՔԵԱՆ ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿ.Ի*

*եւ գործակից եօթը քահանայ հայրերու :*

*ԼՈՅՍ ՏԵՍԱՆ*

### ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

## ԼՈՒՍԵՂԷՆ ՇԻՐԻՄՆԵՐ

ԳՐԱԿԱՆ ԴԻՄԱՍՏՈՒԵՐՆԵՐ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

*Գին 10 Ն. Ֆ.*

*Կը ներկայացուին Ա. Ահարոնեան, Ռուբէն, Լեւոն Շանթ, Ն. Աղբալեան, Յ. Օշական, Շ. Միսաքեան, Թորգոմ Պատրիարք, Բաբգէն Կաթողիկոս, Յակոբ Մալաքեան, Արշակ Չօպանեան, Ե. ՏէրԱնդրէասեան, Ա. Խաչակեան, Գուրգէն Ալէմշահ, Հրանդ Ալեանաք: Պատկերազարդուած 16 նկարներով :*

×

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔ. ՕՐՄԱՆԵԱՆ

## ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՒԹԵԱՆ

*Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ*

ԵՐԱԺՇՏԱՊԵՏ

ՅԱԿՈԲՈՍ ԱՅՎԱԶԵԱՆ

*Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ*

*Վերջին այս երկուքը մէկ հատորով, պատկերազարդ :*

Շքեղ տպագրութիւն 7·50 Ն. Ֆ.

Պարզ տպագրութիւն 5 Ն. Ֆ.

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Այրի Տիկին Սիրարփի Բաբելեանի եւ զաւակներուն, Այրի Տիկ. Հայկանուշ Բաբելեանի, Տէր եւ Տիկին Գիլճեանի եւ բոլոր պարագաներուն, իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, զաւկին եւ եղբօր ԲԻՒԶԱՆԴ ԲԱԲԵԼԵԱՆԻ կսկծալի մահուան առթիւ:*

*Նոյնպէս իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Այրի Տիկին Սիւզան Բարթամեանի, Այրի Տիկին Սիրանուշ Բարթամեանի, Տէր եւ Տիկին Յակոբ Պապիկեանի, եւ բոլոր պարագաներուն, իրենց սիրեցեալ ամուսնոյն, զաւկին, քրոջորդւոյն, ՎԱՀԷ ԲԱՐԹԱՄԵԱՆԻ կսկծալի մահուան առթիւ: Այս տխուր առթիւ վարչութիւնը փոխան ծաղկեպսակի յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Թէհլիրեան սրահին :*

×

*Վարչութիւնը շնորհակալութեամբ ըստացած է Տէր եւ Տիկին Յովհաննէս Վարժապետեանէ քսան Ն. Ֆ. փոխան ծաղկեպսակի ողբացեալ Բիւզանդ Բաբելեանի մահուան առթիւ:*

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ

### ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

շրջանաւարտուհիներու եւ աշակերտուհիներու կողմէ

*Մարտ 26, Կիրակի, կէսօրէ վերջ՝ ժամը 3ին,*

**Salle de la Chimie**

28 bis, Rue Saint-Dominique

Métro Invalides

Պիտի ներկայացուի

### ՄԱՅՐԸ

(Եւգինէ Պօղոսեանէ)

եւ

Ֆրանսերէն կատակերգութիւն մը, Լապիշէն

ԵՐԳ, ՊԱՐ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

6, 5, եւ 4 Ն. Ֆ.



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

# ԸՆԿԵՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ-ԹՈՎՄԱՍԵԱՆԻ

*Մահուան տարելիցին եւ շիրմաքարի զետեղման առթիւ, Փարիզի Հ. Յ. Դ. Ռաֆֆի խումբը այց մը կազմակերպած է այս Կիրակի ժամը 15·30ին, Մոնմորանսիի գերեզմանատունը: Այցելութիւն նաեւ ընկերներ Ա. Գիւլխանդանեանի եւ Ա. . . տոմեանի շիրիմներուն :*

Ընկեր Սահակ Տէր Թովմասեանի յիշատակը յարգող ընկերները եւ բարեկամները կը հրաւիրուին յարգանքի իրենց տուրքը բերելու տարաբախտ ընկերոջ թարմ յիշատակին :

*Հաղորդակցութեան միջոցներ.— կառ տիւ Նորէն իջնել Անկէնի կայարանը ուր կէ կը կատարուի մեկնումը ժամը 15ին:*

# Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ

*ԿԸ ՏՕՆՈՒԻ*

Փարիզի մէջ, Մարտ 18ին, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս

10րդ թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

72, Rue du Faubourg Saint-Martin, Métros : Château d'Eau et Gare de l'Est

### ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. Ժ. ԴԱՏԱՒՈՐԵԱՆ

### ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

*Գեղարուեստական խնամուած բաժին, կէս գիշերին կը սկսին եւրոպ. պարերը*

**Orchestre Cubain LUIS GODY**

*Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով* Մուտք 5 Ն. Ֆ.

*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

ՄԱՐՍԷՅԼ

Կապոյտ խաչի տարեկան ճեռնարկը՝

ԱՊՐԻԼ 22ԻՆ

×

*ԼԻՈՆ.— «Մայիս 28»ը կը տօնուի Լիոնի մէջ, Յունիս 3ի Շաբաթ գիշեր :*

Օթէլ տը լ'Էօրոփի *շքեղ սրահներուն մէջ, պարահանդէսով :*



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿՐԸՆՈՊԼԻ Հայ Ազգ. Եկեղեց. Միութեան տարեկան ընդհ. ժողովը այս Կիրակի, կէսօրէն վերջ ժամը երեքին,* Քափէ տը լա Փոսթ*ի սրահին մէջ,* Փլաս Կրընէթ :

*Օրակարգ՝ Ա) Նիւթական եւ բարոյական հաշուետուութիւն՝ մէկ տարուան գործունէութիւն: Բ) Զանազան հարցեր: Կը հրաւիրուին Միութեան բոլոր անդամները :*

### Ա Զ Դ

*Նախկին Սամաթիացիներու Միութեան վարչութիւնը խորին ցաւով կը ծանուցանէ իր պատուոյ Նախագահ ՎՌԱՄ ՔԻՒՐՔՃԵԱՆԻ մահը եւ այս առթիւ կը յայտարարէ թէ Ապրիլի վերջը կատարելիք իր աւանդական պարահանդէսը յետաձգուած է յաջորդ տարուան, [illegible] այս մեծ սուգին առթիւ :*

## ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ-ՀԱՇՈՒԵՑՈՅՑ ՍՏԱՑՈՂ ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Ներկայիս Յառաջի վարչութիւնը, կանոնաւորելու համար առկախ հաշիւները շրջաբերական – հաշուեցոյցեր կը ղրկէ իր այն բաժանորդներուն, որոնք իրենց հաշիւը չեն փակած մինչեւ 1960ի վերջը:

Այս իմաստով, ղրկուած շրջաբերականներու առաջին գումարը կը ներկայացնէ իրենց առկախ հաշիւը մինչեւ 1960 Դեկտեմբեր 31, ո՛ր ամսուն ալ սկսած ըլլայ իրենց բաժանորդագրութեան հաշիւը:

Ջերմապէս կը խնդրենք որ այս հաշուեցոյցը ստացող բաժանորդները անյապաղ պատասխանեն, կանոնաւորելու համար թէ՛ իրենց թէ՛ թերթիս վարչութեան հաշիւները:

Կանխայայտ շնորհակալութիւններով՝

« ՅԱՌԱՋ »Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Կիրակի, ժամը 10·30ին, Հայածէս պատարագ ու քարոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի կայանէն:

Պատարագիչ՝ Յովսէփ Ծ. Վ. Գափքանճեան:

Քարոզիչ՝ Ներսէս Ծ. Վ. Սեթեան:

Նիւթ՝ «Արդար մարդը՝ Ի. դարուն»:

Կարճ ալիք՝ 31·10, 25·55 եւ 19·84:

Միջին ալիք՝ 196 մ.:

Ծանօթ.— Ամէն ամսուան Գ. Կիրակին Հայածէս պատարագ կը ձայնասփռուի Վատիկանի կայանէն, նոյն ալիքներով եւ միեւնոյն ժամուն:

## ՀՐԱԻԷՐ՝ ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ

Պօմոնի Թաղ. Խորհուրդը եւ Պալաքեան Սրբազանի Դամբարան – Շիրիմի Կառուցման յանձնախումբը, Թաղաթցիներու Հայր. Միութիւնները պատիւ ունին ծանուցանելու Մարսէյլի եւ Ֆրանսայի բոլոր քաղաքներու հայ հաւատացեալ ժողովուրդին թէ՝ յառաջիկայ Մարտ 17ի Ուրբաթ առաւօտ ժամը 8·30ին, Սէն Փիէռի մեծ գերեզմանատան մէջ, հովանաւորութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ նախագահութեամբ Հայր. Պատուիրակ Գերշ. Տ. Սերովբէ Եպիսկ.ի եւ Մարսէյլի քահանայից դասուն մասնակցութեամբ տեղի պիտի ունենայ հոգելոյս

ՊԱԼԱՔԵԱՆ ՍՐԲԱԶԱՆԻ

եւ վեց քահանայ հայրերուն վերաթաղումը նոր դամբարանին մէջ: Իսկ Մարտ 19ի Կիրակի առաւօտ, Հայրապ. Պատուիրակը պիտի պատարագէ Պօմոնի Ս. Գր. Լուս. եկեղեցւոյ մէջ եւ քարոզէ: Յաւարտ պատարագի պիտի կատարուի հանդիսաւոր հոգեհանգիստ: Կէսօրէ վերջ ժամը 3·30-ին, տեղի պիտի ունենայ Ս. Փիէռի նորակերտ դամբարան – շիրմին բացման հանդէսը՝ հովանաւորութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ նախագահութեամբ պատուիրակ Ս. Հօր եւ բոլոր քահանայ հայրերու եւ Պօմոնի Դպրաց Դասու եւ այլ դպիրներու մասնակցութեամբ: Ուստի, սիրով կը հրաւիրուին Մարսէյլի, շրջակայքի եւ այլ քաղաքներու բոլոր հայրենակիցները՝ ներկայ ըլլալ թէ Ս. պատարագին եւ թէ նորակերտ շիրմին հանդիսաւոր բացման, ապրելու եւ ապրեցնելու համար յիշատակը՝

ՇԻՆԱՐԱՐ ԱՌԱՋՆՈՐԴ ՀՈԳԵԼՈՅՍ ՊԱԼԱՔԵԱՆ ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿ.Ի

եւ գործակից եօթը քահանայ հայրերու:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ «Արամ» ենթակոմիտէի ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ընկեր Մարտիրոս Աւետիսեանի բնակարանը, 195պիս, Րիւ տիւ Մէնիլ, Անիէռ: Կարեւոր օրակարգ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Պանեէօ – Քաշանի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 17ին, ընկերուհի Հէքիմեանի բնակարանը, 144, Ավընիւ Արիսթիտ Պրիան: Ներկայ պիտի ըլլայ Շրջ. վարչութեան ներկայացուցիչը: Կարեւոր օրակարգ, Պարտաւորիչ ներկայութիւն:

ԿՐԸՆՈՊԼԻ Հայ Ազգ. Եկեղեց. Միութեան տարեկան ընդհ. ժողովը այս Կիրակի, կէսօրէն վերջ ժամը երեքին, Քաֆէ տը լա Փօսթի սրահին մէջ, Փլաս Կրընէթ:

Օրակարգ՝ Ա) Նիւթական եւ բարոյական հաշուետուութիւն՝ մէկ տարուան գործունէութիւն: Բ) Զանազան հարցեր: Կը հրաւիրուին Միութեան բոլոր անդամները:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի ժամը 10·30ին Հանգստեան ձայնաւոր պատարագ Գերպ. Գրիգոր Պահապանեանի հոգւոյն համար:

Կը խնդրուի Փարիզի անդրանիկ Առաջնորդ Արքեպիսկոպոսին յիշատակը յարգողներէն՝ ներկայ գտնուիլ ու այս ազդը իբր հրաւէր նկատել:

ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

## Յ. ԹՈՐՈՍԵԱՆ

Գծագրութիւն եւ իւղաներկ

Մարտ 10էն 20, ամէն օր ժամը 14էն 19:

DANS LES SALONS DE L'U. G. A. B.

11, Square Alboni, Paris (16e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ալֆորվիլի եւ շրջակայքի Հայութեան նուիրատուներու ցանկը

Յակոբ Աղաճեան, Անանիկ Անանեան, Տէր եւ Տիկին Առաքել Ժամկոչեան, Մ. Ոմն, Մինաս Գարակէօզեան, Կարպիս Գայիշեան քսանական Ն. Ֆ.: Կարօ Սահակեան, Նուպար Բագոսեան, Պետրոս Պետրոսեան, Արամ Դաւիթեան, Յաբէթ Մուրատեան, Գրիգոր Ֆագիրեան, Արտաշէս Ներսէսեան Օննիկ Աղաշեան, Ալէքս Քիրէճեան, Կիւրեղ Մանուկեան, Սարգիս Սէֆէրեան, Յակոբ Փաշայեան, Մանդակունի, Յար. Գասպարեան, Ներսէս Այլահվէրտեան, Սարգիս Աշըգեան, Աւետիս Աղազարեան, Յակոբ Զարշաֆեան, Թաշճեան ընտանիք, Կարապետ Կազոյեան, Տիկին Շնորհիկ Յակոբեան, Պօղոս Հաճի Արթինեան, Գլէման Ակունեան, Յարութիւն Մալճեան, Ժան Յակոբեան, Յարութիւն Ինահիթեան, Ղազարոս Իշխանեան, Յակոբ Գումրուեան, Բարթող Փափազեան, Նիկողոս Նոտարեան, Գէորգ Գէորգեան, Արշաւիր Մելքոնեան, Թելլիկ մայր, Թէօֆիլ Յակոբեան, Մարիամ Փափազեան, Կարապետ Պալեան, Սարգիս Մուրատեան, Մանուկ Յովակիմեան, Ովաննես Պէպէրեան, Կարապետ Պէրպէրեան, Միքայէլ Պետրոսեան եղբայրներ, Սարգիս Չիլինկիրեան տասնական Ն. Ֆ.:

(Շար.)

## ԸՆԿԵՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ_ԹՈՎՄԱՍԵԱՆԻ

Մահուան տարելիցին եւ շիրմաքարի զետեղման առթիւ, Փարիզի Հ. Յ. Դ. Ռաֆֆի խումբը այց մը կազմակերպած է այս Կիրակի ժամը 15·30ին, Մոնմորանսիի գերեզմանատունը: Այցելութիւն նաեւ ընկերներ Ա. Գիւլխանդանեանի եւ Ա. Տոմեանի շիրիմներուն:

Ընկեր Սահակ Տէր Թովմասեանի յիշատակը յարգող ընկերները եւ բարեկամները կը հրաւիրուին յարգանքի իրենց տուրքը բերելու տարաբախտ ընկերոջ թարմ յիշատակին:

Հաղորդակցութեան միջոցներ.— Կառ տիւ Նորէն իջնել Անկէնի կայարանը ուր կէ կը կատարուի մեկնումը ժամը 15ին:

Կառախումբի ժամեր Կառ տիւ Նորէն.— ժամը 14 եւ 14·30ին:

## ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆ
**Contralto**
Կ'ԵՐԳԷ

Այս Ուրբաթ ժամը 21ին, Սէն Ժերմէն տէ Փրէ եկեղեցիին մէջ։
ՊԱԽԻ
Լա Փասիոն սըլոն Սէն - Ժան
×
Երեքշաբթի ժամը 21ին, Սալ Կավօ ։
ՍՔԱՌԼԱԹԹԻ
Սթապաթ Մաթէր
(Առաջին ունկնդրութիւն)
Նուագախումբը կը ղեկավարէ
ԼՈՒԻ ՍՈԼՓԵՑ

## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ
## ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՌԷՆ

Այս Կիրակի, ժամը 10·30ին, Հայածէս պատարագ ու քարոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի կայանէն։

Պատարագիչ՝ Յովսէփ Ծ· Վ· Գափթանեան ։

Քարոզիչ՝ Ներսէս Ծ· Վ· Սեթեան ։

Նիւթ՝ «Արդար մարդը՝ Ի· դարուն» ։

Կարճ ալիք՝ 31·10, 25·55 եւ 19·84 ։

Միջին ալիք՝ 196 մ·։

Ծանօթ·— Ամէն ամսուան Գ· Կիրակին Հայածէս պատարագ կը ձայնասփռուի Վատիկանի կայանէն, նոյն ալիքներով եւ միեւնոյն ժամուն ։

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

Շաբաթ իրիկուն ժամը 20·15ին, ֆրանսական ձայն - պատկերասփիւռը կը ներկայացնէ՝ Պեռլիոզի
Տամնասիոն տը Ֆաուսթը
Մեֆիսթոյի դերը կը կատարէ՝
ԺԻՐԱՅՐ ՍԵՐԳՈՅԵԱՆ
(Փարիզի Օփերայէն)

ԿԱՐԵՒՈՐ·— Պաշտօնական յայտագիրներու մէջ այս ներկայացման իբրեւ թուական տրուած է ուրբաթ, Մարտ 18, փոխանակ ՇԱԲԱԹԻ ։

## ՀՐԱՒԷՐ՝ ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ

Պոմոնի Թաղ· Խորհուրդը եւ Պալաքեան Սրբազանի Դամբարան - Շիրիմի Կառուցման յանձնախումբը, Թողաթցիներու Հայր· Միութիւնները պատիւն ունին ծանուցանելու Մարսէյլի եւ Ֆրանսայի բոլոր քաղաքներու հայ հաւատացեալ ժողովուրդին թէ՝ յառաջիկայ Մարտ 17ի Ուրբաթ առաւօտ ժամը 8·30ին, Սէն Փիէռի մեծ գերեզմանատան մէջ, հովանաւորութեամբ Ազգ· Առաջնորդարանի եւ նախագահութեամբ Հայր· Պատուիրակ Գերշ· Տ· Սերովբէ Եպիսկ·ի եւ Մարսէյլի քահանայից դասուն մասնակցութեամբ տեղի պիտի ունենայ հոգելոյս
ՊԱԼԱՔԵԱՆ ՍՐԲԱԶԱՆԻ
եւ վեց քահանայ հայրերուն վերաթաղումը նոր դամբարանին մէջ։ Իսկ Մարտ 19ի Կիրակի առաւօտ, Հայրապ· Պատուիրակը պիտի պատարագէ Պոմոնի Ս· Գր· Լուս· եկեղեցւոյ մէջ եւ քարոզէ։ Յաւարտ պատարագի պիտի կատարուի հանդիսաւոր հոգեհանգիստ։ Կէսօրէ վերջ ժամը 3·30ին, տեղի պիտի ունենայ Ս· Փիէռի նորակերտ դամբարան - շիրմին բացման հանդէսը՝ հովանաւորութեամբ Ազգ· Առաջնորդարանի եւ նախագահութեամբ պատուիրակ Ս· Հօր եւ բոլոր քահանայ հայրերու եւ Պոմոնի Դպրաց Դասու եւ այլ դպիրներու մասնակցութեամբ։ Ուստի, սիրով կը հրաւիրուին Մարսէյլի, շրջակայքի եւ այլ քաղաքներու բոլոր հայրենակիցները՝ ներկայ ըլլալ թէ Ս· պատարագին եւ թէ նորակերտ շիրմին հանդիսաւոր բացման, աղօթելու եւ ապրեցնելու համար յիշատակը՝
ՇԻՆԱՐԱՐ ԱՌԱՋՆՈՐԴ ՀՈԳԵԼՈՅՍ
ՊԱԼԱՔԵԱՆ ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿ·Ի
եւ գործակից եօթը քահանայ հայրերու ։



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ·— Հ· Յ· Դ· Շրջ· կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ· ժողովի կը հրաւիրէ «Արամ» ենթակոմիտէի ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ընկեր Մարտիրոս Աւետիսեանի բնակարանը, 195պիս, Րիւ տիւ Մէնիլ, Անիէռ ։ Կարեւոր օրակարգ ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ· ԽԱՉԻ Պանեօ - Քաշանի մասնաճիւղի ընդհ· ժողովը այս Շաբաթ ժամը 17ին, ընկերուհի Հէքիմեանի բնակարանը, 144, Ավընիւ Արիսթիտ Պրիան ։ Ներկայ պիտի ըլլայ Շրջ· վարչութեան ներկայացուցիչը։ Կարեւոր օրակարգ, Պարտաւորիչ ներկայութիւն ։

ԿՐԸՆՈՊԼԻ Հայ Ազգ· Եկեղեց· Միութեան տարեկան ընդհ· ժողովը այս Կիրակի, կէսօրէն վերջ ժամը երեքին, Քաֆէ տը լա Փոսթի սրահին մէջ, Փլաս Կրընէթ ։

Օրակարգ՝ Ա) Նիւթական եւ բարոյական հաշուետուութիւն՝ մէկ տարուան գործունէութիւն։ Բ) Զանազան հարցեր ։ Կը հրաւիրուին Միութեան բոլոր անդամները։

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի ժամը 10·30ին Հանդստեան ձայնաւոր պատարագ Գերպ· Գրիգոր Փահապանեանի հոգւոյն համար ։

Կը խնդրուի Փարիզի անդրանիկ Առաջնորդ Արքեպիսկոպոսին յիշատակը յարգողներէն՝ ներկայ գտնուիլ ու այս ազդը իբր հրաւէր նկատել ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Գասպարեան կը ծանուցանեն թէ այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս· Յովհ· Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց զաւկին՝
ՍՏԵՓԱՆ ՄԿՐՏԻՉԵԱՆԻ
մահուան քառասունքին առթիւ ։

Կը հրաւիրուին տարաբախտ պատանիին յիշատակը յարգողները ։



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԸՆԿԵՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ_ԹՈՎՄԱՍԵԱՆԻ

Մահուան տարելիցին եւ շիրմաքարի զետեղման առթիւ, Փարիզի Հ· Յ· Դ· Ռաֆֆի խումբը այց մը կազմակերպած է այս Կիրակի ժամը 15·30ին, Մոնմորանսիի գերեզմանատունը։ Այցելութիւն նաեւ ընկերներ Ա· Գիւլխանդանեանի եւ Ատոմեանի շիրիմներուն։

Ընկեր Սահակ Տէր Թովմասեանի յիշատակը յարգող ընկերները եւ բարեկամները կը հրաւիրուին յարգանքի իրենց տուրքը բերելու տարաբախտ ընկերոջ թարմ յիշատակին ։

Հաղորդակցութեան միջոցներ·— Կառ տիւ Նորէն իջնել Անկէնի կայարանը ուրկէ կը կատարուի մեկնումը ժամը 15ին։

Կառախումբի ժամեր Կառ տիւ Նորէն·— ժամը 14 եւ 14·30ին ։

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ
ԿԸ ՏՕՆՈՒԻ

Փարիզի մէջ, Մարտ 18ին, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս
10րդ թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

72, Rue du Faubourg Saint-Martin, Métros : Château d'Eau et Gare de l'Est

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. Ժ. ԴԱՏԱՒՈՐԵԱՆ
ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական խնամուած բաժին, Արտասանութիւն՝ Ա· Գրիգորեան, երգ Օր· Շաֆէ Պէնկեան, հայկական պարեր՝ Սօսի պարախումբի կողմէ։
Պատկեր մը «ՎԱՐԴԱՆԱՆՔ»էն, ներկայացուած Նոր Սերունդի Անանունի «Կարմրենց» խումբի կողմէ, ղեկավարութեամբ Պ· Մ· ՇԻՇՄԱՆԵԱՆԻ ։
Կէս գիշերին կը սկսին եւրոպ· պարերը։

**Orchestre Cubain LUIS GODY**

Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով    Մուտք 5 Ն· Ֆ·

## ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆ
**Contralto**

Կ'ԵՐԳԷ

*Այս Ուրբաթ ժամը 21ին*, Սէն Ժերմէն տէ Փրէ *եկեղեցիին մէջ*։

*ՊԱԽԻ*

Լա Փասիոն սըլոն Սէն – Ժան

×

*Երեքշաբթի ժամը 21ին, Սալ Կավօ* ։

*ՍՔԱՌԼԱԹԹԻ*

Սթապաթ Մաթէր

(*Առաջին ունկնդրութիւն*)

*Նուագախումբը կը ղեկավարէ*

*ԼՈՒԻ ՍՈԼՓԵՑ*

### ՀՐԱՒԷՐ՝ ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ

*Պօմոնի Թաղ. Խորհուրդը եւ Պալաքեան Սրբազանի Դամբարան – Շիրիմի Կառուցման յանձնախումբը, Թաղթցիներու Հայր. Միութիւնները պատիւ ունին ծանուցանելու Մարսէյլի եւ Ֆրանսայի բոլոր քաղաքներու հայ հաւատացեալ ժողովուրդին թէ՝ յառաջիկայ Մարտ 17ի Ուրբաթ առաւօտ ժամը 8·30ին, Սէն Փիէռի մեծ գերեզմանատան մէջ, հովանաւորութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ նախագահութեամբ Հայր. Պատուիրակ Գերշ. Տ. Սերովբէ Եպիսկ.ի եւ Մարսէյլի քահանայից դասուն մասնակցութեամբ տեղի պիտի ունենայ հոգեւոյս*

*ՊԱԼԱՔԵԱՆ ՍՐԲԱԶԱՆԻ*

*եւ վեց քահանայ հայրերուն վերաթաղումը նոր դամբարանին մէջ։ Իսկ Մարտ 19ի Կիրակի առաւօտ, Հայրապ. Պատուիրակը պիտի պատարագէ Պօմոնի Ս. Գր. Լուս. եկեղեցւոյ մէջ եւ քարոզէ։ Ցաւարտ պատարագի պիտի կատարուի հանդիսաւոր հոգեհանգիստ։ Կէսօրէ վերջ ժամը 3·30-ին, տեղի պիտի ունենայ Ս. Փիէռի նորակերտ դամբարան – շիրմին բացման հանդէսը՝ հովանաւորութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ նախագահութեամբ պատուիրակ Ս. Հօր եւ բոլոր քահանայ հայրերու եւ Պօմոնի Դպրաց Դասու եւ այլ դպիրներու մասնակցութեամբ։ Ուստի, սիրով կը հրաւիրուին Մարսէյլի, շրջակայքի եւ այլ քաղաքներու բոլոր հայրենակիցները՝ ներկայ ըլլալ թէ Ս. պատարագին եւ թէ նորակերտ շիրմին հանդիսաւոր բացման, աղօթելու եւ ապրեցնելու համար յիշատակը՝*

*ՇԻՆԱՐԱՐ ԱՌԱՋՆՈՐԴ ՀՈԳԵԼՈՅՍ*

*ՊԱԼԱՔԵԱՆ ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿ.Ի*

*եւ գործակից եօթը քահանայ հայրերու* ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Կապ. Խաչի Շրջ. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է տասը Ն. Ֆ. Տէր եւ Տիկին Վահէ Խանչէրեանէ, Վէնսան Ձիլինկիրեանի մահուան առթիւ, օգափոխութեան կայանին համար* ։

×

*Լիոնի Եկեղեց. Տիկ. Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Սէն Շամոնէն Տիկին Սարա Օպօզեան, հանգուցեալ Մարիցա Օպօզեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրէ հարիւր Ն. Ֆ., Փոն տը Շէրիւիէն Տէր եւ Տիկին Յարութիւն Խոլազեան 180 Ն. Ֆ., Օր. Պերճուհի Խըոլազեան կը նուիրէ մատանի մը։ Պ. Արիս Մանուկեան (Պանտոլէն), Պ. Կարպիս Մանուկեանի ամուսնութեան առթիւ կը նուիրէ հարիւր Ն. Ֆ., Պ. Մանուկ Մանուկեան իր զաւկին ամուսնութեան առթիւ Համախմբ. Հայր. Միութեան կը նուիրէ հարիւր Ն. Ֆ.։ (Ստանալ եկեղեցւոյ քարտուղարութենէն սոյն գումարը)։*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— *Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ստիպողաբար ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ «Արամ» ենթակոմիտէի ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ընկեր Մարտիրոս Աւետիսեանի բնակարանը*, 195պիս, Րիւ տիւ Մէնիլ, Անիէռ : *Կարեւոր օրակարգ* ։

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱՊ. ԽԱՉԻ Պանեէօ – Քաշանի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 17ին, ընկերուհի Հէքիմեանի բնակարանը*, 144, Ավընիւ Արիսթիտ Պրիան : *Ներկայ պիտի ըլլայ Շրջ. վարչութեան ներկայացուցիչը։ Կարեւոր օրակարգ, Պարտաւորիչ ներկայութիւն* ։

*ԿՐԸՆՈՊԼԻ Հայ Ազգ. Եկեղեց. Միութեան տարեկան ընդհ. ժողովը այս Կիրակի, կէսօրէն վերջ ժամը երեքին*, Քաֆէ տը լա Փօսթի *սրահին մէջ*, Փլաս Կրընէթ :

*Օրակարգ՝ Ա) Նիւթական եւ բարոյական հաշուետուութիւն՝ մէկ տարուան գործունէութիւն։ Բ) Զանազան հարցեր։ Կը հրաւիրուին Միութեան բոլոր անդամները։*

*ՀԱՄԱԽՄԲ. Հայր. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի առաւօտ, ժամը 9-ին, 7 Պուլվ. տ'Աթէն, Պար տը Կլոպի սրահը։ Օրակարգ.— Սէնթ Անթուանի մասնաճիւղի կազմակերպած պարահանդէսը* ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

« Մայիս 28 »ը կը տօնուի Փարիզի մէջ, 27 Մայիս Շաբաթ գիշեր, Զ. թաղապետարանի սրահներուն մէջ :

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ երիտասարդ ընկերներ Վահէ Փարթամեանի եւ Բիւզանդ Բաբէլեանի կսկծալի մահուան առթիւ, իրենց ընտանեկան պարագաներուն եւ ընկեր Յակոբ Պապիկեանին* ։

×

*Լիոնի Վարանդեան կոմիտէն՝ ընկերներ Բիւզանդ Բաբելեանի եւ Վահէ Փարթամեանի կսկծալի մահուան առթիւ իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Յ. Պապիկեանի՝ եւ Պ. Յ. Վարժապետեանի, ինչպէս նաեւ իրենց ընտանեկան պարագաներուն* ։

### *ԿՈՉ ՄԱՐՍԷՅԼԻ ԹՈՔԱՏՑԻՆԵՐՈՒՆ*

*Մարսէյլի բոլոր Թոքատցիները խորհրդակցական ընդհ. ժողովի կը հրաւիրուին այս կիրակի իրիկուն, ժամը 9ին, Պօմոնի եկեղեցիին սրահը* ։

*Ներկայ կ'ըլլայ եւ զեկուցում կուտայ Հայր. Միութեան Փարիզի ներկայացուցիչը* ։

### *ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

ՄԱՐՍԷՅԼ

Կապոյտ խաչի տարեկան ձեռնարկը՝

ԱՊՐԻԼ 22ԻՆ

×

*ԼԻՈՆ.— «Մայիս 28»ը կը տօնուի Լիոնի մէջ, Յունիս 3ի Շաբաթ գիշեր* :

Օթէլ տը լ'Էօրօփի *շքեղ սրահներուն մէջ, պարահանդէսով* ։

## ԸՆԿԵՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ_ԹՈՎՄԱՍԵԱՆԻ

*Մահուան տարելիցին եւ շիրմաքարի զետեղման առթիւ, Փարիզի Հ. Յ. Դ.* Ռաֆֆի *խումբը այց մը կազմակերպած է այս Կիրակի ժամը 15·30ին, Մոնմորանսիի գերեզմանատունը։ Այցելութիւն նաեւ ընկերներ* Ա. Գիւլխանդանեանի *եւ Ա.*տոմեանի *շիրիմներուն* ։

Ընկեր Սահակ Տէր Թովմասեանի յիշատակը յարգող ընկերները եւ բարեկամները կը հրաւիրուին յարգանքի իրենց տուրքը բերելու տարաբախտ ընկերոջ թարմ յիշատակին :

*Հաղորդակցութեան միջոցներ.— Կառ տիւ Նորէն իջնել Անկէնի կայարանը ուրկէ կը կատարուի մեկնումը ժամը 15ին* ։

*Կառախումբի ժամեր* Կառ տիւ Նորէն.— *ժամը 14 եւ 14·30ին* ։

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ

*ԿԸ ՏՕՆՈՒԻ*

Փարիզի մէջ, Մարտ 18ին, Շաբաթ գիշեր ժամը 21էն մինչեւ լոյս
10րդ թաղամասի ճաշարանի շքեղ սրահներուն մէջ

72, Rue du Faubourg Saint-Martin, Métros : Château d'Eau et Gare de l'Est

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. Ժ. ԴԱՏԱՒՈՐԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

*Դեղարուեստական խնամուած բաժին, Արտասանութիւն՝* Ա. Գրիգորեան, *երգ* Օր. Շաքէ Պէնկեան, *հայկական պարեր՝* Սօսի *պարախումբի կողմէ։ Պատկեր մը «ՎԱՐԴԱՆԱՆՔ»էն, ներկայացուած Նոր Սերունդի Անուոլի «Կաւվարենց» խումբի կողմէ, ղեկավարութեամբ Պ. Մ. ՇԻՇՄԱՆԵԱՆԻ* ։

*Կէս գիշերին կը սկսին եւրոպ. պարերը* ։

**Orchestre Cubain LUIS GODY**

*Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով* Մուտք 5 Ն. Ֆ.

## ՍԳԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

*Ի ՅԻՇԱՏԱԿ ԱԶԳԱՅԻՆ ՀԵՐՈՍ*

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

*Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ :*

*Այս Շաբաթ երեկոյ ժամը 21ին, Թէա-թր Մինիմիփալի մէջ :*

*Կը նախագահէ Ն. ԹԷՊՈՅԵԱՆ*

*Կը խօսի Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ*

*Վալանսի եւ շրջակայից հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ոգեկոչելու անմահ հերոսին յիշատակը որ մէկուկէս միլիոն զոհերու վրէժը լուծեց 1921, Մարտ 15ին Պերլինի մէջ :*

*Մանրամասնութիւնները տեղւոյս վրայ :*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱԳ. ԽԱԶԻ Վալանսի մասնաճիւղի ընդհ. անդամ. ժողովը այս Երկուշաբթի կէսօրէ ետք ժամը 3ին, «Ահարոնեան» ակումբին մէջ : Կը խնդրուի բոլոր ընկերուհիներէն ներկայ ըլլալ այս կարեւոր ժողովին :*

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Միջին տարիքի կին մը, տնական աշխատանքներու համար, կէս օր : ԴԻՄԵԼ.— ՀՐԱՉԵԱՆԻ,*

6, Rue Lamartine TRU. 43-19

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ

### ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

շրջանաւարտուհիներու եւ աշակերտուհիներու կողմէ

*Մարտ 26, Կիրակի, կէսօրէ վերջ՝ ժամը 3ին,*

**Salle de la Chimie**

28 bis, Rue Saint-Dominique

Métro Invalides

Պիտի ներկայացուի

**ՄԱՅՐԸ**

(Եւգինէ Պօղոսեանէ)

եւ

Ֆրանսերէն կատակերգութիւն մը, Լապիշէն

ԵՐԳ, ՊԱՐ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

6, 5, եւ 4 Ն. Ֆ.

## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

ԴԷՊԻ

### ԵՐԵՒԱՆ

Երեք շաբաթը անգամ մը

ՆԱՒՈՎ

ՄԱՐՍԷՅԼԷՆ ուղղակի դէպի ԵՐԵՒԱՆ

*Երթուդարձի գիներն են, կերակուրով վերադարձին կարելի է Վենետիկ իջնել*

13 ՕՐ ԵՐԵՒԱՆ

*Պանդոկի մէջ բնակութեամբ եւ սնունդով*

| | |
|---|---|
| Բ. կարգ | 3046 Ն. Ֆ. |
| Գ. կարգ | 2506 Ն. Ֆ. |

*ՁԵՂՉ խմբովին ճամբորդողներուն :*

*ՈՒՂԵԳՈՅՔԻ իրաւունք, անձ գլուխ, 150 քիլօ՝ Բ. կարգի եւ 100 քիլօ՝ Գ. կարգի ճամբորդներուն :*

Նոյն ճամբորդութիւնը օդանաւով կամ երկաթուղիով :

*Մեր գրասենեակը կը գրաղի նաեւ դէպի Ամերիկա, Սուրիա եւ այլ ճամբորդութիւններով :*

ԴԻՄԵԼ՝

**ԺԱՆ-ԵՂԻՇԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ**

ՄԱՐՍԷՅԼ

48, Rue de la République

Tél.: 20.47.22

MARSEILLE

●

ՓԱՐԻԶ

Մասնաճիւղ

7, Rue Auber, 7

Tél : RIC. 63-69

PARIS (9e)

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԲԺՇԿ. ՄԻՈՒԹԵԱՆ

*Ժողովրդական դասախօսութիւնը Մարտ 21ին, Երեքշաբթի, ժամը 21ին, Հ. Բ. Ը. Միութեան պաշտօնատեղին*, 11 Սքուար Ալպօնի :

*Դասախօս՝ Բժիշկ Ն. ԱՂԱՋԱՆԵԱՆ :*

*Նիւթը՝* Զափահասներու հոգեբանական եւ ընկերային հարցեր :

*Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :*

## ՆՈՒԷՐ

*Սէնթ Էթիէնէն Տէր եւ Տիկին Արամ Խաչատուրեան տարաբախտ* Բիւզանդ Բաբելեանի *արկածալի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի քսան Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեանի սրահին :*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՁԵՐ ԲՈԼՈՐ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

→ ՄԷԿ ՀԱՍՑԷ ←

## OFFICE INTERNATIONAL DES VOYAGES

**36, Galerie Monpensier, PARIS**

**RIC. 54-30 et 72-80**

*Միակ լիսանս ունեցող գործակալութիւնը որ հայ տնօրէն մը ունի.—*
ՔՐԻՍԹԻԱՆ ՃԵՐՄԱԿԵԱՆ

ՕԴԱՆԱՒ, ԵՐԿԱԹՈՒՂԻ, ՆԱՒ: ՎԻԶԱ ԵՒ ՏՈՄՍԵՐՈՒ ԲՈԼՈՐ ՁԵՒԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՁՐԻ, ԿԸ ԲԱՒԷ ՀԵՌԱՁԱՅՆԵԼ

Բոլոր տոմսերու գիները պաշտօնական գիներն են, ոչ մէկ յաւելում :

*ՕԴԱՆԱՒՈՎ ԵՂԱԾ ԿԱՐԳ ՄԸ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐ Կ'ԱՊԱՀՈՎԵՆ ՆԱԵՒ ՁՐԻ ԲՆԱԿԱՐԱՆ ԵՒ ՃԱՇ ԶԱՆԱԶԱՆ ՔԱՂԱՔՆԵՐՈՒ ՄԷՋ*

ԴԷՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ

Օդանաւով ճամբորդութեանց համար մասնաւոր դիւրութիւններ

9 Օր ձրի բնակութիւն՝ Երեւան

*Մեկնումէն առաջ՝ կանխավճար՝* 258·81 Ն. Ֆ. : *Կարելի է ապառիկ վճարել՝* տասը առ հարիւր մեկնումէն առաջ, մնացեալը՝ 3էն 12 ամիսէն :

*Բոլոր մանրամասնութիւններու համար դիմել անձամբ կամ հեռաձայնել՝*

36, GALERIE MONPENSIER
(Jardin du Palais Royal)
Tél. : RIC. 54-30 et 72-80

*Մասնաւոր հաշիւ կը բացուի այն ընկերութիւններուն համար, որոնք կանոնաւորապէս կը ճամբորդեն :*

## ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀ. ՄԻՈՒԹԻՒՆ

### SICOMEX

*Ֆրանսական Կառավարութենէն եւ Մոսկուայի Ինթուրիսթէն ճանչցուած Հաստատութիւն :*

**SICOMEX**

**20, Rue Royale, PARIS 8e**
**Téléphone : OPE. 67-77**
Métro : CONCORDE et MADELEINE

*ՄԻԱԿ ՏՈՒՆԸ*

*որ կարելիութիւնը կուտայ ձեզի, հետեւեալ երկու ձեւերով ծրարներ ղրկելու:*

*1.— Մեր ծախած ապրանքներով, որոնց ցանկը ճոխ է եւ որակը ընտիր :*

*ԻՏԱԼԻԱՅԷՆ ուղղակի ներածում,* քարտիկան *եւ զուտ բուրդէ վերնաշապիկներ՝ վերջին նորաձեւութիւն :*

*ԱՆԳԼԻԱՅԷՆ ուղղակի ներածում, զուտ բուրդէ կերպասներ և այլ ապրանքներ: Մուշտակի նմանակ վերարկուներ, անձրեւանոց, ներքնազգեստ, գուլպայ, փիրէնեան բուրդով շալ, կօշիկ, ժամացոյց, եւայլն... ԱՄԷՆԷՆ ՆՊԱՍՏԱՒՈՐ ԳԻՆԵՐՈՎ :*

*Մեր ապրանքներուն գիներուն մէջ նախատեսուած են մաքսային տուրքերը, արտօնութեան, ապահովագրութեան, ծրարումի եւ ստացագրի ծախքերը :*

*ՈՉ ՄԷԿ ԾԱԽՔ ծրարը ստացողին կողմէ :*

*Մեր ապրանքներուն ԱՌԱՔՈՒՄԻ ծախքն է 25 Ն. Ֆ. մինչեւ 20 քիլօ :*

*2.— Ձեր բերած ապրանքներն ալ կ'ընդունինք, պայմանաւ որ նոր ըլլան:*

*ԱՐԱԳ ՅԱՆՁՆՈՒՄ՝ 2-4 շաբաթէն :*

ՈՒԶԵՑԷՔ ԵՒ ԱՆՄԻՋԱՊԷՍ ՊԻՏԻ ՍՏԱՆԱՔ ՄԵՐ ԲԱՑԱՏՐԱԿԱՆ ԵՒ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՑՈՒՑԱԿՆԵՐԸ :

GROS — DÉTAIL

ՎԵՐԱԲԱՑՈՒԱԾ Է

ՆՊԱՐԱՎԱՃԱՌ

# ՇԻՐԱԿ

ՆՊԱՐԱՎԱՃԱՌ

**26, Rue de Trévise, Paris (9e) - Tél. PRO. 38-63**

ՏԷՐ ԵՒ ՏՆՕՐԷՆ՝ **Ա. ՏԱՊԱՂԵԱՆ**

*ՄԷԿ ԱՆԳԱՄ ԳՆՈՐԴ*

*ՄՆԱՅՈՒՆ ՅԱՃԱԽՈՐԴ*

Մեծաքանակի գին՝ փոքրաքանակ գնումի համար

*ԹԱՐՄ*

*ՆՊԱՐԵՂԷՆՆԵՐ*

*ԸՆՏԻՐ*

## MORY et Cie

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ :

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք : Նուազագոյն ծախքերով կը ղրկենք Խորհրդ. Միութիւն :

*Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար.—*

**10, Rue St. Vincent de Paul, Paris 10e**

(PRÈS DE LA GARE DU NORD)

**Téléphone : TRU. 27-70**

# ԷՒՐՈՊԱՅԻ

ՄԵԾԱԳՈՅՆ ԱՐՏԱԴՐԻՉԸ

ՀԷԼՎԱ — ԹԱՀԻՆ

ԼՈԳՈՒՄ — ՇԱՐՈՑ

Սուսամ — (ՌՈՃԻԿ)

ՀԷԼՎԱ — ՎԱՐԴԷ-ԱՆՈՅՇ

LE BOSPHORE
MARQUE DEPOSÉE

ՆՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ...

**CHOC-ALVA · CHOCO-LOC**

Ste le BOSPHORE

SIÈGE SOCIAL

2, Rue Louis Astouin /Marseille (2ème)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

| | |
|---|---|
| Նախորդ գումար | 16·224·20 |
| Պետրոս եւ Ցովիկ Եղխազարեան | 200·— |
| Շահպազեան (Մարսէյլ) | 40·— |
| Տէր եւ Տիկին Յ. Կօշկակարեան | 100·— |
| Մարտիրոս Յակոբեան | 50·— |
| Փափազեան ընտանիք (Քլէրմօն) | 100·— |
| Հայկանոյշ Գիւլխանդանեան | 20·— |
| Եղիսաբէթ Այանեան | 50·— |
| Պօղոս Խօքսիւզեան (Վիէն) | 10·— |
| Հրանտ Պալեան | 30·— |
| Տէր եւ Տիկին Աւետիս Եագուպեան | 20·— |
| Զաւէն Ինճէեան | 10·— |
| Տիկին Գոհար Ղազարոսեան (Մարսէյլ) | 50·— |
| Տէր եւ Տիկ. Ս. Թիրեաքեան | 30·— |
| Հմայեակ Քէօսէեան | 100·— |
| Գումար | 17·034·20 |

## ՍԳԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

### Ի ՅԻՇԱՏԱԿ ԱԶԳԱՅԻՆ ՀԵՐՈՍ

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ:

Այս Շաբաթ երեկոյ ժամը 21ին, Թէա-թր Մինխիփալի մէջ:

Կը նախագահէ Ն. ԹԷՊՈՅԵԱՆ

Կը խօսի Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Վալանսի եւ շրջակայքի հայ հասարա-կութիւնը կը հրաւիրուի ոգեկոչելու անմահ հերոսին յիշատակը որ մէկուկէս միլիոն զոհերու վրէժը լուծեց 1921, Մարտ 15ին Պերլինի մէջ:

Մանրամասնութիւնները տեղւոյս վրայ:

## ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆ

**Contralto**

Կ'ԵՐԳԷ

Երեքշաբթի ժամը 21ին, Սալ Կաւօ:

ՍՔԱՌԼԱԹԹԻ

Սքապաթ Մաթէր

(Առաջին ունկնդրութիւն)

Նուագախումբը կը ղեկավարէ

ԼՈՒԻ ՍՈՒՖԵՑ

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

Ողբ. Պ. Վռամշապուհ Քիւրքճեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի Շաւիլի եկեղեցիին կը նուիրեն.— Զուլ-հակեան ընտանիք երեսուն Ն. Ֆ., Տիկին Ատրինէ Լօգմակճօղեան՝ քսան Ն. Ֆ.:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Պոմոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Կիւլ-պէնկեան ֆոնտէն 130 Ն. Ֆ. ի նպաստ իր դպրոցին:

Նոյնպէս Պ. Բիւզանդ Բաբելեանի կս-կծալի մահուան առթիւ շնորհակալու-թեամբ ստացած է հետեւեալ նուիրա-տուութիւնները.— Պ. Պ. Ժիրայր Տէր Վարդանեանէ, Նշան Դարբինեանէ, Աբ-րահամ Թօնկուրեանէ, Յովսէփ Գօճա-կէօզեանէ եւ Յակոբ Տօլպաշեանէ քսա-նական Ն. Ֆ., նաեւ Պ. Գրիգոր Աւետ-եանէ եւ Պ. Վաղարշակ Տէր Վարդանեա-նէ տասնական Ն. Ֆ.: Մասնաճիւղս իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Բաբելեան ընտանիքին եւ բոլոր պարա-գաներուն իրենց ամուսնոյն, հօր եւ ազ-գականին Պ. Բիւզանդ Բաբելեանի դառ-նաղէտ մահուան առթիւ:

Շնորհակալութեամբ ստացած է նաեւ Պ. Տիգրան Թումիկեանէ տասը Ն. Ֆ. իր զոքանչ մօր տիկին Միքայէլեանի մահ-ուան քառասունքի հոգեհանգստեան առի-թով:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը շնոր-հակալութեամբ ստացած է Պ. Ժիրայր Ջիլլինկիրեանէ յիսուն Ն. Ֆ., Մանուկնե-րու օղափոխութեան կայանին ի նպաստ:

×

Ֆ. Կ. Խաչի Վալանսի մասնաճիւղը շը-նորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Ա. Մաքսուտեանէ քսան Ն. Ֆ., փոխան ծաղկեպսակի Բիւզանդ Բաբելեա-նի դառնակսկիծ մահուան առթիւ: Քսան Ն. Ֆ. Տէր եւ Տիկին Խաչիկեանէ իրենց զաւկին զինուորութենէ ողջ վերադար-ձին առթիւ: 10 Ն. Ֆ. Պ. Յ. Խօճիկեանէ:

×

Լիոնի Եկեղեց. Տիկ. Միութիւնը շնոր-հակալութեամբ ստացաւ իր համակրելի բարերարէն որ կը մնայ միշտ՝ Ոմն 40 Ն. Ֆ.:

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ

### ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած

ՏԻՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

շրջանաւարտուհիներու եւ աշակեր-տուհիներու կողմէ

Մարտ 26, Կիրակի, կէսօրէ վերջ՝ ժամը 3ին,

**Salle de la Chimie**

28 bis, Rue Saint-Dominique

Métro Invalides

Պիտի ներկայացուի

**ՄԱՅՐԸ**

(Եւգինէ Պօղոսեանէ)

եւ

Ֆրանսերէն կատակերգութիւն մը, Լապիշէն

ԵՐԳ, ՊԱՐ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

6, 5, եւ 4 Ն. Ֆ.

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Լիոնի Ազգ. Միութիւնը խորապէս ազ-դուած իր պաշտօնակցին Պ. Յակոբ Վար-ժապետեանի փեսին՝ Բիւզանդ Բաբելեա-նի աղետալի մահուան առթիւ, կը փու-թայ յայտնել հանգուցեալին բոլոր պա-րագաներուն, մանաւանդ իր այրիացած կնոջ վշտահար Տիկին Սիրարփի Բաբել-եանի, իր խորին ցաւակցութիւնները:

## ԱՊՐԻԼ 11/24Ը ԼԻՈՆԻ ՄԷՋ

Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս Լիոնի Ազգ. Միութեան հովանաւորու-թեամբ եւ երեք հայ կրօնական յարան-ուանութեանց մասնակցութեամբ 1914-1918 Ապրիլեան նահատակներու ի յիշա-տակ սգահանդէսը տեղի պիտի ունենայ, Ապրիլ 23ին, Լիոնի 6րդ Թաղապետարանի սրահներուն մէջ:

Կը խնդրուի մասնաւորապէս Լիոնի եւ շրջաններու բոլոր Ազգ. կազմակերպու-թիւններէ ի մտի ունենալ սոյն Թուականը եւ այլ հանդիսութիւններով չխաչաձեւել զայն:



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

### ԼՈՒՍԵՂԷՆ ՇԻՐԻՄՆԵՐ

ԳՐԱԿԱՆ ԴԻՄԱՍՏՈՒԵՐՆԵՐ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

Գին 10 Ն. Ֆ.

Կը ներկայացուին Ա. Ահարոնեան, Ռուբէն, Լեւոն Շանթ, Ն. Աղբալեան, Յ. Օշական, Շ. Միսաքեան, Թորգոմ Պատ-րիարք, Բարգէն Կաթողիկոս, Յակոբ Մալաքեան, Արշակ Զօպանեան, Ե. Տէր-Անդրէասեան, Աւ. Իսահակեան, Գուրգէն Ալէմշահ, Հրանդ Ալեանաք: Պատկերա-զարդուած 16 նկարներով:

×

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔ. ՕՐՄԱՆԵԱՆ

### ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՒԹԵԱՆ

Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ԵՐԱԺՇՏԱՊԵՏ

ՅԱԿՈԲՈՍ ԱՅՎԱԶԵԱՆ

Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Վերջին այս երկուքը մէկ հատորով, պատկերազարդ:

Շքեղ տպագրութիւն 7·50 Ն. Ֆ.

Պարզ տպագրութիւն 5 Ն. Ֆ.

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### ՄԱՐՍԷՅԼ

Նախաձեռնութեամբ Մուրատ Ռա-փայէլեան Նախկին Աշակերտաց Մի-ութեան:

ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ՝ ԱՊՐԻԼ 8

Դաշնակահար

**ՌԱՖՖԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ**

կուտայ բացառիկ նուագահանդէս մը Սփլանտիտի սրահներուն մէջ:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթեղբայր-եան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հը-րաւիրէ Լանսէի, Ըրնաժի եւ Կրընոպլի բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օ-րակարգ:

### ՄԱՅԻՍ 28Ը

Կը տօնուի Կրընոպլի մէջ, Մայիս 28ին, Ռիւ Ժէյի սրահը:

ՇՐՋԱՆԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ ԻՐ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՎ
ՄԵԾ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՄԲ ԿԸ ՏՕՆԷ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

ԿԻՐԱԿԻ ԱՊՐԻԼ 9ԻՆ, ԺԱՄԸ 15ԻՆ

SALLE DE LA CHIMIE

28 bis, Rue Saint-Dominique

Կը նախագահէ ՏԻԿԻՆ Հ. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ

Կը բանախօսէ ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՖԷՔԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Փարիզի սիրուած եւ գնահատուած լաւագոյն ուժերը:

**ԱՓՐԻԿԵԱՆԻ ՔԱՌԵԱԿԸ**

(Հայկական ժողովրդական երգեր)

Պ. Մկրտիչ Պօղոսեան (թենոռ), Պ. Արա Սերոբեան (պառիթոն), Օր. Ա. Գարոյեան (արտասան.) Պ. Արա Գրիգորեան (արտ.)

Յայտնի ջութակահար

GERARD JARRY

(Premier Prix du Concours Marguerite Long–Jacques Thibaud 1954)

Դաշնակով կ'ընկերանայ

Mme FRANÇOISE LE GONIDES-MAURON

Պիտի նուագէ Ա. Խաչատուրեանի, Գ. Մ. Ալէմշահի եւ այլ հեղինակներու գործերը:

Մուտք՝ 5 եւ 3 Ն. Ֆ.

## ՆՈՒԷՐ

Իրենց մօր՝ Արշակուհի Եավէրի յիշատակին Մատլէն եւ Մկրտիչ Եավէր քառասուն Ն. Ֆ. կը նուիրեն Յառաջի բարգաւաճման:

## ՍԳԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ
### Ի ՅԻՇԱՏԱԿ ԱԶԳԱՅԻՆ ՀԵՐՈՍ
## ՍՈՂՈՄՈՆ ԹԵՀԼԻՐԵԱՆԻ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ:

Այս Շաբաթ երեկոյ ժամը 21ին, Թէատր Մինիսիփալի մէջ:

Կը նախագահէ Ն. ԹԷՊՈՅԵԱՆ

Կը խօսի Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Վալանսի եւ շրջակայից հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ոգեկոչելու անմահ հերոսին յիշատակը որ մէկուկէս միլիոն զոհերու վրէժը լուծեց 1921, Մարտ 15ին Պերլինի մէջ:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

## ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ-ՀԱՇՈՒԵՑՈՅՑ ՍՏԱՑՈՂ ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Ներկայիս Յառաջի վարչութիւնը, կանոնաւորելու համար առկախ հաշիւները շրջաբերական – հաշուեցոյցեր կը ղրկէ իր այն բաժանորդներուն, որոնք իրենց հաշիւը չեն փակած մինչեւ 1960ի վերջը:

Այս իմաստով, ղրկուած շրջաբերականներու առաջին գումարը կը ներկայացնէ իրենց առկախ հաշիւը մինչեւ 1960 Դեկտեմբեր 31, ո՞ր ամսուն ալ սկսած ըլլայ իրենց բաժանորդագրութեան հաշիւը:

Ջերմապէս կը խնդրենք որ այս հաշուեցոյցը ստացող բաժանորդները անյապաղ պատասխանեն, կանոնաւորելու համար թէ՛ իրենց թէ՛ Թերթիս վարչութեան հաշիւները:

Կանխայայտ շնորհակալութիւններով՝

« ՅԱՌԱՋ »Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՄԱՅԻՍ 28Ը

Կը տօնուի Կրընոպլի մէջ, Մայիս 28ին, Րիւ Ժէի սրահը:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Շաւիլի եկեղեցւոյ հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ստացած է Պ. Պալապանեանէ (Փարիզ) եկեղեցի իր այցելութեանառթիւ հազար Ն. Ֆ.

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԶԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

### ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ԾԱՂԿԱԶԱՐԴ

**ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ**
Առաւօտեան ժամերգութիւն 7.30:
Պատարագ, բազմաձայն երկսեռ խումբով ժամը 10, Դռնբացէք, ժամերգութիւն ժամը 17:

**ՊՕՄՈՆ**
Առաւօտեան ժամերգութիւն ժամը 8:
Պատարագ ժամը 10:
Դռնբացէք ժամը 16.30:

**ՏԷՍԻՆ**
Ժամերգութիւն՝ ժամը 8.30, պատարագ ժամը 10, (Շաբաթ ժամը 17ին Նախատօնակ Ծաղկազարդի):

**ԼԻՈՆ**
Ժամերգութիւն ժամը 8, պատարագ 10, Դռնբացէք 17:

**ԱՌՆՈՒՎԻԼ**
Նոյն ժամերուն:

**ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ**

ՄԱՐՍԷՅԼ

Կապոյտ խաչի տարեկան ձեռնարկը՝
ԱՊՐԻԼ 22ԻՆ

×

ԼԻՈՆ.— «Մայիս 28»ը կը տօնուի Լիոնի մէջ, Յունիս 3ի Շաբաթ գիշեր:
Օրկլ տը լ'Էօրօփի չէքեղ սրահներուն մէջ, պարահանդէսով:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած
ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ
շրջանաւարտուհիներու եւ աշակերտուհիներու կողմէ

Մարտ 26, Կիրակի, կէսօրէ վերջ՝ ժամը 3ին,

**Salle de la Chimie**

28 bis, Rue Saint-Dominique
Métro Invalides

Պիտի ներկայացուի

**ՄԱՅՐԸ**
(Եուգինէ Պօղոսեանէ)

եւ

Ֆրանսերէն կատակերգութիւն մը, Լապիշէն

ԵՐԳ, ՊԱՐ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

6, 5, եւ 4 Ն. Ֆ.

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ ողբ. Տիկին Տիրատուրեանի յուղակաւորութեան առիթով փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Այրի Տիկին Պետրոս Մկրեանէ քսան Ն. Ֆ. Պ. Պ. Մկր. Քէօլէեանէ քսան, Փէլթէքեանէ քսան, Նազարեանէ տասը:

× Լենինականէն (Հայաստան) Հայկանուշ Մարտ. Գրիգորեան կը փնտռէ Յովհ. Մարտ. Մկրտիչեանը: Դիմել եկեղեցի:

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Ժէօնէս է Աքսիոն Հայկ. Ընկերակցութեան կեդր. վարչութիւնը հրապարակաւ իր սրտագին շնորհակալութիւնները կը յայտնէ Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութեան որ բարեհաճեցաւ Միութեանս ամառնային բանակումներուն համար նուիրել վառարան – փուռ մը:

Վարչութիւնս, հիմնարկութեան առաջարկին ընթացք տալով, խոստացաւ 1961ի ընթացքին ձրիաբար ընդունիլ տասը հայ չքաւոր մանուկներ իր ամառնային բակումին: Դիմումները այժմէն իսկ կատարել վարչութեանս հասցէին.—

Վեր. Յ. Հէլվաճեան,

6, Place de la Rotonde
St. Jérôme Marseille 13 (B. du R.)



**ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ**

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցական Տարեշրջանի փակման
եւ
Բարերարներու Օրը
ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆԻՍ 25
Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Առնուվիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կառվարենց խումբը յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Հայաստան Թերթին, Տէր Աղդէ քհնյ. Փայլակեանի մահուան առթիւ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Թադւոր Տիրատուրեան եւ զաւակները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձնապէս կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբ. Տիկ. Գարինէ Տիրատուրեանի, (Ծնեալ Գալէնտէրեան) մահուան առթիւ որ զոհ գնաց դժբախտ արկածի մը:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու ընկերները այս Շաբաթ ժամը 21ին, Մշակոյթի Տան Ս. Թէքէեան սրահին մէջ: Զեկուցում կեդր. կոմիտէի կողմէ քաղաքական ընդհ. կացութեան մասին:

Կը հրաւիրուին Նոր Սերնդականները եւ Ուսանողական Ռուբէն խումբը:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Ըրնաժի եւ Կրընոպլի բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի ընկերական ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Ըէժանի սրճարանը: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէի հաշուեքննիչ յանձնախումբը արտակարգ ընդհ. ժողովի կը հրաւիրէ Վիէնի բոլոր ընկերները անխտիր, այս Շաբաթ ժամը 20.30ին, «Համօ Օհանջանեան» ակումբի մէջ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Ս. Էթիէնէն Տէր եւ Տիկին Արամ Խաչատուրեանէ քսան Ն. Ֆ. Բիւզանդ Բաբելեանի եղերական մահուան առթիւ :*

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ
### ՁԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ԾԱՂԿԱԶԱՐԴ

**ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ**

Առաւօտեան ժամերգութիւն 7·30 :
Պատարագ , բազմաձայն երկսեռ խումբով ժամը 10 , Դռնբացէք , ժամերգութիւն ժամը 17 :

**ՊՕՄՈՆ**

Առաւօտեան ժամերգութիւն ժամը 8 :
Պատարագ ժամը 10 :
Դռնբացէք ժամը 16·30 :

**ՏԷՍԻՆ**

Ժամերգութիւն՝ ժամը 8·30 , պատարագ ժամը 10, (Շաբաթ ժամը 17ին Նախատօնակ Ծաղկազարդի) :

**ԼԻՈՆ**

Ժամերգութիւն ժամը 8, պատարագ 10, Դռնբացէք 17 :

**ԱՌՆՈՒՎԻԼ**

Նոյն ժամերուն :

**ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻ**

Թիւ պատարագ ժամը 8·30 :
Առաւօտեան ժամերգութիւն ժամը 9 :
Օրհնութիւն , ձիթենեաց ճիւղերու ժամը 9·45 :
Ձայնաւոր պատարագ ժամը 10 :
Երեկոյեան ժամերգութիւն ժամը 16 :
Դռնբացէք արարողութիւն 17·30 :
Օրհնութիւն Ս. Հաղորդութիւն 18·30 :

**ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ**

Ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ, ժամը 10ին :
Երեկոյեան ժամերգութիւն եւ Դռնբացէք ժամը 16ին :
Հանդիսաւոր պատարագ ժամը 17ին :

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Տէսինի Հ. Յ. Դ. կոմիտէն իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկ. Յ. Պապիկեանի եւ Պ. Յ. Վարժապետեանի եւ ընտանեկան պարագաներուն, ընկերներ վահէ Փարթամեանի եւ Բիւզանդ Բաբելեանի անակնկալ մահերուն առթիւ :

×

Վիէնի Կ. Խաչի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Տէր եւ Տիկին Մըղոյեանի, իրենց եղբօր կսկծալի մահուան առթիւ :

## Հ. Յ. Դ.

**ՓԱՐԻԶ.**— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընկերական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու ընկերները այս Շաբաթ , ժամը 21ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ : Զեկուցում կեդր. Կոմիտէի կողմէ՝ Թուրքիոյ ներքին տագնապը :

Կը հրաւիրուին Նոր Սերնդականները եւ Ուսանողական Ռուբէն խումբը :

**ԿՐԸՆՈՊԼԸ.**— Հ. Յ. Դ. Եօթեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Րընաժի եւ Կրընոպլի բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 21ին, ակումբի սրահին մէջ : Կարեւոր օրակարգ :

**ՓԱՐԻԶ.**— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբին ընկերական ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Րէժանի սրճարանը : Պարտաւորիչ ներկայութիւն :

**ՎԻԷՆ.**— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէի հաշուեքննիչ յանձնախումբը արտակարգ ընդհ. ժողովի կը հրաւիրէ Վիէնի բոլոր ընկերները անխտիր, այս Շաբաթ ժամը 20·30ին ,« Համօ Օհանջանեան» ակումբին մէջ : Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

**ՄԱՐՍԷՅԼ.**— Հ. Յ. Դ. Սէն Ժերոմի Հայաստան ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 21ին, նախապէս որոշուած հաւաքատեղին : Խիստ կարեւոր օրակարգ :Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է :

## ՄԱՐՍԷՅԼ
### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Համախարբ. Հայր. Միութեան պարահանդէսը այս Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ , Սալ Ալհամպրայի մէջ, 340 Պուլվ. Շավ :
Նուագախումբ ՔԼՕՏ ՊԷՍԷ :
Մուտք 7 Ն. Ֆ. :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

« Մայիս 28»ի Հայաստանի Անկախութեան 43րդ տարեդարձը կը տօնուի մեծ պատրաստութեամբ, յառաջիկայ Մայիս 27ին, Շաբաթ գիշեր, մինչեւ լոյս, «Ալ-Համպրա»յի սրահներուն մէջ :

Մարսիլահայ կազմակերպութիւններէն եւ Միութիւններէն կը խնդրուի նկատի ունենալ վերոյիշեալ թուականը եւ չխաչաձեւել :

## ՍԳԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ
### Ի ՅԻՇԱՏԱԿ ԱԶԳԱՅԻՆ ՀԵՐՈՍ
## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ :

Այս Շաբաթ երեկոյ ժամը 21ին, Թէաթր Մինիսիփալի մէջ :

Կը նախագահէ Ն. ԹԷՊՕՅԵԱՆ

Կը խօսի Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Վալանսի եւ շրջակայից հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ոգեկոչելու անմահ հերոսին յիշատակը որ մէկուկէս միլիոն զոհերու վրէժը լուծեց 1921 Մարտ 15ին Պերլինի մէջ :

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ :







**ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ**

կազմակերպուած
ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ
շրջանաւարտուհիներու եւ աշակերտուհիներու կողմէ

*Մարտ 26 , Կիրակի, կէսօրէ վերջ՝ ժամը 3ին ,*

**Salle de la Chimie**
28 bis, Rue Saint-Dominique
Métro Invalides

Պիտի ներկայացուի
**ՄԱՅՐԸ**
(Եւգինէ Պօղոսեանէ)
եւ
Ֆրանսերէն կատակերգութիւն մը , Լապիշէն

ԵՐԳ , ՊԱՐ , ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ
6, 5, եւ 4 Ն. Ֆ.

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

« Մայիս 28 »ը կը տօնուի Փարիզի մէջ, 27 Մայիս Շաբաթ գիշեր, Զ. քաղաքապետարանի սրահներուն մէջ :

imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՁԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ԾԱՂԿԱԶԱՐԴ

•

### ՓԱՐԻԶ

**Ս. ՅՈՎՀ. – ՄԿՐՏԻՉ**

Վերջին Արեւագալ այս Ուրբաթ ժամը 9ին։
Խաղաղական եւ Հսկում ժամը 16ին։
Ծաղկազարդ, սկիզբ ժամերգութեան 8, քառաձայն պատարագ ժամը 10ին։
Դռնբացէք ժամը 16·30ին։

**ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ** –

Ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ, ժամը 10ին։
Երեկոյեան ժամերգութիւն եւ Դռնբացէք ժամը 16ին։
Հանդիսաւոր պատարագ ժամը 17ին։

**ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ**

Առաւօտեան ժամերգութիւն 7·30 :
Պատարագ, բազմաձայն երկսեռ խումբով ժամը 10, Դռնբացէք, ժամերգութիւն ժամը 17 :

**ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ (Մարսէյլ)**

Լոյս Ջուարթ, Շաբաթ ժամը 17ին :
Ծաղկազարդ սկիզբ ժամը 8ին :
Պատարագ ժամը 10ին :
Դռնբացէք ժամը 17·30ին։

**ՊՕՄՌՆ**

Առաւօտեան ժամերգութիւն ժամը 8 :
Պատարագ ժամը 10 :
Դռնբացէք ժամը 16·30։

**ՏԷՍԻՆ**

Ժամերգութիւն՝ ժամը 8·30, պատարագ ժամը 10, (Շաբաթ ժամը 17ին Նախատօնակ Ծաղկազարդի)։

**ԼԻՈՆ**

Ժամերգութիւն ժամը 8, պատարագ 10, Դռնբացէք 17։

**ԱՌՆՈՒՎԻԼ**

Նոյն ժամերուն :

**ՇԱՒԻԼ**

Փարիզի եկեղեցիին ժամերուն :

**ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻ**

Թիւ պատարագ ժամը 8·30։
Առաւօտեան ժամերգութիւն ժամը 9։
Օրհնութիւն, ձիթենեաց ճիւղերու ժամը 9·45։
Ձայնաւոր պատարագ ժամը 10։
Երեկոյեան ժամերգութիւն ժամը 16։
Դռնբացէք արարողութիւն 17·30 :
Օրհնութիւն Ս. Հաղորդութիւն 18·30։



**ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ**

Կազմակերպուած
ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ
շրջանաւարտուհիներու եւ աշակերտուհիներու կողմէ

Մարտ 26, Կիրակի, կէսօրէ վերջ՝ ժամը 3ին,

**Salle de la Chimie**

28 bis, Rue Saint-Dominique
Métro Invalides

Պիտի ներկայացուի

**ՄԱՅՐԸ**

(Եւգինէ Պօղոսեանէ)

եւ

Ֆրանսերէն կատակերգութիւն մը, Լապիշէն

ԵՐԳ, ՊԱՐ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

6, 5, եւ 4 Ն. Ֆ.

## ՍԳԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Ի ՅԻՇԱՏԱԿ ԱԶԳԱՅԻՆ ՀԵՐՈՍ

**ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ**

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ :

Այս Շաբաթ երեկոյ ժամը 21ին, Թէատր Մունիսիփալի մէջ :

Կը նախագահէ Ն. ԹԷՊՈՅԵԱՆ
Կը խօսի Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Վալանսի եւ շրջակայից հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ոգեկոչելու անմահ հերոսին յիշատակը որ մէկուկէս միլիոն զոհերու վրէժը լուծեց 1921, Մարտ 15ին Պերլինի մէջ։

Մանրամասնութիւնները տեղւոյս վրայ։

**ՄԱՐՍԷՅԼ**

**ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ**

Համախմբ. Հայր. Միութեան պարահանդէսը այս Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ, Սալ Ալհամպրայի մէջ, 340 Պուլվ. Շավ :

Նուագախումբ ՖԼՕՏ ՊԷՍԷ։

Մուտք 7 Ն. Ֆ.։

**ԼՈՅՍ ՏԵՍԱՆ**

**ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ**

**ԼՈՒՍԵՂԷՆ ՇԻՐԻՄՆԵՐ**

ԳՐԱԿԱՆ ԴԻՄԱՍՏՈՒԵՐՆԵՐ
ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

Գին 10 Ն. Ֆ.

Կը ներկայացուին Ա. Ահարոնեան, Ռուբէն, Լեւոն Շանթ, Ն. Աղբալեան, Յ. Օշական, Շ. Միսաքեան, Թորգոմ Պատրիարք, Բաբգէն Կաթողիկոս, Յակոբ Մալաքեան, Արշակ Չօպանեան, Ե. Տէր-Անդրէասեան, Աւ. Իսահակեան, Գուրգէն Ալէմշահ, Հրանդ Ալեանաք։ Պատկերազարդուած 16 նկարներով :

×

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔ. ՕՐՄԱՆԵԱՆ

**ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՒԹԵԱՆ**

Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

ԵՐԱԺՇՏԱՊԵՏ
ՅԱԿՈԲՈՍ ԱՅՎԱԶԵԱՆ

Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Վերջին այս երկուքը մէկ հատորով, պատկերազարդ :

Շքեղ տպագրութիւն 7·50 Ն. Ֆ.
Պարզ տպագրութիւն 5 Ն. Ֆ.



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

**ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ**

**Surprise Party**

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբը կը կազմակերպէ պարանցիկ ցերեկոյթ մը, այս Կիրակի Մշակոյթի Տան մէջ, ժամը 17էն 23։

**ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ**

Ֆ. Կ. Խաչի երիտասարդուհիներու Զաւօ Շանթ խումբին դասախօսութիւնը այս Ուրբաթ ժամը 20ին, Կապ. Խաչի գրասենեակը 17, Րիւ Պլէօ :

Դասախօս՝ Տիկին ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ – ՊՈՒՏԱՔԵԱՆ։

Կը հրաւիրուին նաեւ անդամուհիներ եւ համակիրներ :

**ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ**

Կապոյտ Խաչի Վիէնի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները իր դպրոցներուն : Ընկերուհի Ա. Նաճառեանէ երեսուն Ն. Ֆ., իր թոռնիկին ծննդեան առթիւ, ընկերուհի Ովսաննայ Խօքսիւզեան քսան, իր մօր մահուան առթիւ։ Պ. Յ. Քալայճեան անդրանիկ զաւկին ծննդեան առթիւ քսան, Պ. Ա. Գալիկեանէ տասը, հիւանդանոց այցելութեան առթիւ Փարիզէն Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ հոգաբարձութեան միջոցաւ, Պ. Գ. Կիւլպէնկեան հիմնադրամէն 200 Ն. Ֆ.։

**Հ. Յ. Դ.**

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու ընկերները այս Շաբաթ ժամը 21ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ։ Զեկուցում կեդր. կոմիտէի կողմէ՝ Թուրքիոյ ներքին տագնապը :

Կը հրաւիրուին Նոր Սերնդականները եւ Ուսանողական Ռուբէն խումբը :

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Րընաժի եւ Կրընոպլի բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ :

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէի հաշուեքննիչ յանձնախումբը արտակարգ ընդհ. ժողովի կը հրաւիրէ Վիէնի բոլոր ընկերները անխտիր, այս Շաբաթ ժամը 20·30ին, «Համօ Օհանջանեան» ակումբին մէջ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Սէն Ժերոմի Հայաստան ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 21ին։ Նախապէս որոշուած հաւաքատեղին։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տարաբախտ Վահէ Փարթամեանի յուղարկաւորութեան՝ փոխան ծաղկեպսակի, Ս. Լուի Թաղականութիւնը Պ. Վրէժ Եղքովանեանէ նաեւ ստացած է յիսուն Ն. Ֆ. ի նպաստ եկեղեցւոյ (25), եւ Ս. Լուի Կապ. Խաչի մասնաճիւղին (25)։

×

Տարաբախտ Վահէի այրին՝ Տիկին Սիւզան Փարթամեանի, մօրը Տիկին Սիրանուշ Փարթամեանի (ծնեալ Պապիկ-եան), քրոջը եւ քեռայրին Տէր եւ Տիկին Յակոբ Կէօնճեանի եւ մեր բոլոր ընտանեկան պարագաներու կողմէն, խորապէս զգածուած, անհուն շնորհակալութիւններ կը յայտնեմ Հ. Յ. Դ. Արեւմտեան Եւրոպայի Կեդր. Կոմիտէին, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութեան, Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան «Լը Փրովանսալ», «Յառաջ», եւ «Հայաստան»թերթերուն խմբագրութեան, Հարաւային Ֆրանսայի Ազգ. Կեդր. վարչութեան, Առաջնորդական փոխանորդ Տէր Հօր եւ բոլոր քահանայ հայրերու, Սէն Լուի Կըրան-Փէնի պատուարժան Թաղ. Խորհուրդին, Ֆրանս. Ընկերվարական կուսակցութեան 12րդ Թաղամասի մասնաճիւղին, Հ. Յ. Դ. Մարսէյլի, Լիոնի, Վալանսի Շրջ. Կոմիտէներու, Քրիստափոր, Ակնունի, Հայաստան ենթակոմիտէներու, Վարանդեան, Նիսի Գէորգ Չաւուշ եւ Ավինեոնի Մուրատ խումբերուն, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի խումբին, Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի, Պօմոնի եւ Սէն Լուի մասնաճիւղերուն, Համազգային, Մշակութային Միութեան Մարսէյլի վարչութեան, Հ. Մ. Ը. Մ. ի Մարսէյլի կազմին, ինչպէս նաեւ բոլոր ընկերներու, բարեկամներու, ծանօթներու եւ ամէն անոնց որոնք անձամբ, հեռագրաւ, հեռախօսով, նամակով եւ ծաղկեպսակներով մասնակցեցան մեր մեծ վշտին՝

ՎԱՀԷ ՓԱՐԹԱՄԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ,

Յակոբ Պապիկեան

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընկերական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ։ Զեկուցում Կեդր. Կոմիտէի կողմէ՝ Թուրքիոյ ներքին տագնապը։

Կը հրաւիրուին Նոր Սերնդականները եւ Ուսանողական Ռուբէն խումբը։

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Ըռնաժի եւ Կրընոպլի բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէի հաշուեքննիչ յանձնախումբը արտակարգ ընդհ. ժողովի կը հրաւիրէ Վիէնի բոլոր ընկերները անխտիր, այս Շաբաթ ժամը 20.30ին, «Համօ Օհանջանեան» ակումբին մէջ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Սէն Ժերոմի Հայաստան ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 21ին, նախապէս որոշուած հաւաքատեղին։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

### ԺԱՌԱՆԳՈՐԴ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Պ. Օվալեան Մարտ 8ին մեռած է Ֆերնան Վիտալի հիւանդանոցին մէջ, ունի սենեակ մը եւ կարասիներ, կը փնտռուին իր ժառանգորդները, կ'ենթադրուի որ Պոլիս քոյր մը ունի։ Դիմել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանատունը։

### ՆՈՒԷՐ

Կապոյտ Խաչի Շրջ. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է յիսուն Ն. Ֆ. Տէր եւ Տիկին Ստեփան Էլճիբէկեանէ իր օգափոխութեան կայանին համար։

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ
### Surprise Party

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբը կը կազմակերպէ պարանցիկ ցերեկոյթ մը, այս Կիրակի Մշակոյթի Տան մէջ, ժամը 17էն 23։

### ՄԱՐՍԷՅԼ
### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Համախառբ. Հայր. Միութեան պարահանդէսը այս Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ, Սալ Ալհամպրայի մէջ, 340 Պուլվ. Շավ։

Նուագախումբ ՔԼՕՏ ՊԷՍԷ։

Մուտք 7 Ն. Ֆ.։

### ՍԳԱՀԱՆԴԷՍ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ
### Ի ՅԻՇԱՏԱԿ ԱԶԳԱՅԻՆ ՀԵՐՈՍ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ։

Այս Շաբաթ երեկոյ ժամը 21ին, Թէաթր Մունիսիփալի մէջ։

Կը նախագահէ Ն. ԹԷՊՈՅԵԱՆ
Կը խօսի Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Վալանսի եւ շրջակայից հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ոգեկոչելու անմահ հերոսին յիշատակը որ մէկուկէս միլիոն զոհերու վրէժը լուծեց 1921, Մարտ 15ին Պերլինի մէջ։

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։









### ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Անիէռ – Պուա Քոլոմպի մասնաճիւղին։
Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24։
Մանրամասնութիւնները յետագային։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

Տէր եւ Տիկին Վաղինակ Ազիզեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Կոպեռնիկ Թանտրճեան, Խաժակ Թանտրճեան, Տէր եւ Տիկին Ռոստոմ Թանտրճեան եւ բոլոր ընկերներն ու բարեկամները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց եղբօր, հօրեղբօր, խնամիին, ընկերոջ եւ բարեկամին՝

ՅԱԿՈԲ ԱԶԻԶԵԱՆԻ

յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ Լոս-Անճըլըս, ուրկէ մարմինը փոխադրուած է Տիթրոյթ եւ թաղուած իր եղբօր շիրիմի կողքին։

Ծանօթ.— Փոխան ծաղկեպսակի նուէրներ կ'ընդունուին ի նպաստ Հ. Յ. Դ. վեթերաններու ֆոնտին։

Հասցէ.—

V. Azizian
75 Rhode Island
Highland Park 3
Mich. (U.S.A.)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տարաբախտ Սահակ Տէր-Թովմասեանի դամբանին շինութեան առթիւ Տիկին Զարուհի Տէր-Թովմասեան եւ Օր. Ֆլորա Շէօհլաեան իրենց երախտագիտական խոր զգացումները կը յայտնեն բոլոր այն ընկերներուն եւ բարեկամներուն որոնք մասնակցեցան անոր յիշատակը յարգելու այդ խիստ գնահատելի ձեռնարկին։ Սրտագին շնորհակալութիւններ կը յայտնեն նմանապէս բոլոր անոնց որոնք իր մահուան տարելիցին առթիւ, Կիրակի 19 Մարտ, այցելեցին իր գերեզմանին կամ նամակով յայտնեցին իրենց յարգանքը։

Ջերմ շնորհակալութիւններ կը յայտնեն նաեւ «Յառաջ»ի ընծայած ընկերական զգայուն վերաբերումին համար։

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի խումբը երեք հարիւր Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան։

### ԳԱՍՊԱՐ ԻՓԷԿԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ ԻՆՆԵՐՈՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ

Այրի Տիկին Գասպար Իփէկեան եւ զաւակները իրենց ամուսնոյն եւ հօր Գասպար Իփէկեանի մահուան իններորդ տարեդարձին առթիւ քսան Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան (Ստանալ Յառաջէն) եւ տասը Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տիկին Տիրատուրեանի մահուան առթիւ Տիկին Ոգինէ Բալայեան քսան Ն. Ֆ. կը նուիրէ Մարսէյլի Մայր եկեղեցիին։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները.— Պ. Մկրտիչ Գազանճեան քսան Ն. Ֆ., Կրթ. ձեռնարկներուն, փոխան ծաղկեպսակի Ողբ. Վռամշապուհ Քիւրքճեանի մահուան առթիւ։ Պ. Ժիրայր Զիլինկիրեան յիսուն Ն. Ֆ., բարեպաշտ տիկին մը յիսուն Ն. Ֆ.։

×

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ բոլոր անոնց որոնք իրենց նիւթական եւ բարոյական օժանդակութեամբ նպաստեցին իր պարահանդէսին յաջողութեան։

### ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Անիէռ-Պուա Քոլոմպի մասնաճիւղին։ Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24։ Մանրամասնութիւնները յետագային։









Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9ᵉ)

Փարիզի Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն խոր ցաւով կ'ողբայ իր ընկերներէն՝

ՅԱԿՈԲ ԱՃԻՃԵԱՆԻ

կսկծալի եւ յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ Լոս – Անճըլըսի մէջ։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Պ. Խաչիկ Արթինեան հարիւր Ն. Ֆ. կը նուիրէ Անթիլիասի Կաթողիկոսարանին, յիշումը՝ իր զաւկին Ֆրանսուա Յարութիւնի Ալժերիոյ զինուորական ծառայութենէն վերադառնալուն առթիւ, յիշումը՝ Հոգեհանգստեան պաշտօն կատարելու իր պարագաներէն Պետրոսեան, Չալըքեան, Գարակէօզեան, Գապաստալեան, Զպուք – ճեան, Կոթպաշեան, Զիթճեան, Հրանտեան եւ Արթինեան ընտանիքներու ննջեցեալներու հոգւոյն համար։

## ՆՈՒԷՐ

Ողբ. Բիւզանդ Բաբելեանի ցաւալի մահուան առթիւ Շաւիլէն Տէր եւ Տիկին Գալուստ Մինասեան քսան Ն. Ֆ. կը նուիրեն Կապ. Խաչի Շաւիլի մասնաճիւղին եւ Տէր եւ Տիկին Բիւզանդ Մինասեան Մշակոյթի Տան Թէհլէրեան սրահին երեսուն Ն. Ֆ.։ (Այս վերջինը ստանալ Յառաջէն)։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՕՊԸՆԱ.— Այրի Տիկին Մարի Սիւրմէնեան եւ զաւակները՝ Աշոտ եւ Հերմինէ իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն Վալանսի Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ընկերներուն եւ իրենց ընկերացող քահանային, որոնք ազնիւ մտածումն ունեցած են այցելելու իրենց ընկերոջ՝ Խորէն Սիւրմէնեանի գերեզմանին, անոր մահուան տարելիցին առթիւ։ Եռագոյնով զարդարուած ծաղկեպսակ մը զետեղելէ եւ քահանային հոգոցէն ետք ընկերները յիշեցին ողբացեալին կեանքն ու գործը եւ Հայր – Մեր երգելով հրաժեշտ տուին իրենց ընկերոջ։





## ՅԵՏԱՁԳՈՒԱԾ

Ա. Գմբէթեանի յանկարծական հիւանդութեան եւ Գրիգոր Վահանի վիրաբուժական գործողութեան հետեւանքով «Մնլտակցիներու Միութեան» 29 Մարտի յայտարարուած ներկայացումը յետաձգուած է անորոշ ժամանակով։

## ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Անիէռ – Պուա Քոլոմպի մասնաճիւղին։ Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24։ Մանրամասնութիւնները յետագային։

Imprimerie Speciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Լոնտոնէն պատանի Վարոս Ֆ. Շահպազեան մէկ անգլ. ոսկի կը նուիրէ :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Ֆ. Կապ. Խաչի Սէն Ժերոմի (Մարսէյլ) մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Պ. Լեւոն Քէսմէճեանէ քսան Ն. Ֆ., իր կնոջ մահուան քառասունքին առթիւ :*

*Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Պ. Պ. Նահապետեան եղբարք իրենց մօր հանգուցեալ Մարգրիտ Նահապետեանի մահուան քառասունքին առթիւ յիսուն Ն. Ֆ., հանգուցեալ Բիւզանդ Բաբելեանի կսկծալի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի Կափէն Պ. Թադէոս Թադէոսեան յիսուն Ն. Ֆ., նոյն առթիւ Պ. Կարպիս Պզտիկեան յիսուն Ն. Ֆ.:*

## ՆՈՒԷՐ

*Այրի Տիկին Սիւրմէնեան յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Որբերու Օգն. Մարմնին, իր ամուսնոյն Խորէն Սիւրմէնեանի մահուան տարելիցին առթիւ: (Ստանալ «Յառաջ»էն):*

### *ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ*

*Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Անիէռ – Պուա Քոլոմպի մասնաճիւղին :*
Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24 :
*Մանրամասնութիւնները յետագային :*

*ՇՈՒՏՈՎ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ*

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### *ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ*

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 125 –126, հետեւեալ ճոխ բովանդակութեամբ.—

*Մայրական ցաւը* (խմբ.) : *«Ետեւէս հող մի ընէք»* (Լիլի Գոչունեան) : *Հակէթի մասին* (Տոքթ. Գ. Գալուստեան) : *Արեան փոխներարկում* (Զ. Պարթեւ) : *Ուշադրութիւն ողնասիւնին* (Տոքթ. Նաւասարդ) : *Ծովերու եւ լիճերու ափին վըրայ* (Տոքթ. Գ. Բամպուկճեան) : *Ջրկոտեմ* (Յովսէփ Իշխանեան) : *Սեւանայ լիճը* (Գ. Սաղաթէլեան) : *Թոխ – Թոխ կը հազան* (Տոքթ. Շ. Այվազեան) : *Միամտեայ երախայի մը յուշերը* (Ա.) : *Զուկ կերէք* (Տոքթ. Ասֆանազ) : *Տղոց խելացութիւնը չափել* (Տոքթ. Աշճեան) : *Կենայ երգ* (Գ. Սարեան) : *Արուեստական սերնդագործութիւն* (Տոքթ. Պանծալի) : *Կլիմայափոխութիւն եւ հոգեփոխութիւն* (Տոքթ. Արշակ Պօղոսեան) : *Հովկուլները* (Շ. Նարդունի) : *Արուեստ խօսակցութեան* (Բ.) : *Դասեր Թունաւորման դէմ* :

*Բաժանորդագրութեան պայմաններ.—* *Տարեկան* 15 *նոր ֆրանք* (1500 *ֆրանք*) : *Արտասահման* 20 *նոր ֆրանք* (2000 *Ֆ.*) *երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար* 37,5 *նոր ֆրանք* (3750 *Ֆր.*) :

Աւաւասիկ թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը: Մէկ բաժնեգինը տասը այցեգին կ'արժէ :

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԶԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

### ՓԱՐԻԶ

*Ս. ՅՈՎՀ. – ՄԿՐՏԻՉ*
*Ժամերգութիւն ժամը* 8 :
*Պատարագ ժամը* 10 :
*Ոտնլուայ ժամը* 16 :
*Խաւարում* 19·30 :

*ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ*
*Ժամերգութիւն ժամը* 10·30 :
Ոտնլուայ 15 :
*Հանդիսաւոր պատարագ* 16·30 :
*Խաւարման ժամերգութիւն* 20 :

*ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ*
*Ժամերգութիւն ժամը* 8·30 :
*Պատարագ եւ հաղորդութիւն տղոց* 10 :
*Ոտնլուայ* 17 :
*Խաւարում* 19·30 :

*ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻ*
*Պատարագ ժամը* 8 :
*Երեկոյեան ժամերգութիւն* 15 :
*Ոտնլուայ* 16 :
*Գիշերային ժամերգութիւն* 18 :
*Առաւօտեան ժամերգութիւն* 20·30 :
*Խաւարում* 21·30 :
*«Խաչի քո Քրիստոս»* 22·30 :

*ՊՕՄՈՆ*
*Ժամերգութիւն ժամը* 8·30 :
*Պատարագ* 10 :
*Հաղորդութիւն մանկանց եւ*
*Ոտնլուայ* 17 :
*Խաւարում* 19·30 :

*ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ (Մարսէյլ)*
*Ժամերգութիւն ժամը* 9 :
*Ոտնլուայ* 17 :
*Խաւարում* 20 :

*ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ*
*Ժամերգութիւն ժամը* 9 :
*Հաղորդութեան պատարագ* 10·30 :
*Ոտնլուայ* 16 :
*Խաւարում* 19·30 :

*ՏԷՍԻՆ*
*Պատարագ ժամը* 10 :
*Ոտնլուայ* 16·30 :
*Խաւարում* 20·30 :

*ԱՐՈՒԱՐՁԱՆՆԵՐ*
*ՇԱՒԻԼ, ԱՌՆՈՒՎԻԼ*
*եւ ԱԼՖՈՐՎԻԼ*
*Փարիզի եկեղեցւոյ ժամերուն :*



## ԿԱՐԵՒՈՐ ԱԶԴ

*Անգամ մը եւս կը խնդրենք որ Յառաջի* Շէք – փօսթալի *թիւը չօգտագործուի առաքումներու համար որոնք թերթին չեն պատկանիր :*

Յառաջի Շէք – փօսթալի *թիւը՝*
15069 – 82
*վերապահուած է միայն ՅԱՌԱՋին (բաժնեգին, ազդ, գործակալութիւն) :*

*Առանցմէ զատ միւս գումարները ղրկել միայն* Մանտա – Քարթով :

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի*



*Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ*

ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Այս Չորեքշաբթի , ժամը 21ին, Ազգ. Տան մէջ:*
32 Րիւ տը Թրէվիզ :
*Դասախօս՝* ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ :
*Կը հրաւիրուին Նոր Սերնդականները:*

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանի վարչութիւնը կը ծանուցանէ թէ հերթական դասախօսութիւնները Զատկի տօներուն առթիւ ընդհատուած են :*

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Մարսէյլի Մայր Եկեղեցիի հայերէնի դասընթացքի աշակերտութեան հանդէսներկայացումը Ապրիլ 29ին :*

### *ԺԱՌԱՆԳՈՐԴ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ*

*Պ. Օվալեան Մարտ 8ին մեռած է Ֆերնան Վիտալի հիւանդանոցին մէջ, ունի սենեակ մը եւ կարասիներ, կը փնտռուին իր ժառանգորդները, կ'ենթադրուի որ Պոլիս քոյր մը ունի : Դիմել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանատունը:*

Տիկին Գեղանոյշ Զօլաքեան եւ զաւակները Ժագ եւ Նուպար ։

Տէր եւ Տիկին Արշակ Մոսկոֆեան, (Թուլոն) ։

Տէր եւ Տիկին Յեսու Մոսկոֆեան, Ֆըրէզնօ (Ամերիկա) ։

Օր. Վարդուհի Մոսկոֆեան, (Պոլիս), խոր վիշտով կը ծանուցանեն իրենց թանկագին մօր, մեծ մօր, եւ քրոջ՝

**ՏԻԿԻՆ ԽՈՍՐՈՎՈՒՀԻ ՉԻԼՏԻՐԵԱՆԻ**
(Ծնեալ Մոսկոֆեան)

կսկծալի մահը, Մարտ 27ին, յետ երկարատեւ հիւանդութեան, 68 տարեկանին ։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Հինգշաբթի, Մարտ 30, Ալֆորվիլի Հայոց եկեղեցին, (Րիւ տէ Պրոշէ), ժամը ճիշդ 13·30ին ։

Ուրկէ մարմինը կը փոխադրուի տեղւոյն գերեզմանատունը ։

Մասնաւոր մահազդ դրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել ։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼԻ Համազգայինը իր խոր ցաւակցութիւնները կը յայտնէ Թէրզիպաշեան ընտանիքին իր սիրելի նախագահին՝ ԱՐԱՄ ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆԻ մահուան առթիւ ։

Այս առթիւ շնորհակալութեամբ ստացած է հարիւր Ն. Ֆ. Թէրզիպաշեան ընտանիքէն եւ յիսուն Ն. Ֆ. Պ. Մելքոն Պօղոսեանէ ։

Համազգայինը նոյնպէս իր խոր ցաւակցութիւնները կը յայտնէ Պ. Պ. Յակոբ Պապիկեանի եւ Թադէոս Գըլըճեանի, իրենց անդարմանելի կորուստներուն համար ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կապ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տիկին Մատլէն Եավէրէ քսան Ն. Ֆ. իր մօր Այրի Տիկին Արշակուհի Եավէրի անթառամ յիշատակին ։ Նոյն առթիւ շնորհակալութեամբ ստացած է Պ. Միքայէլ Եավէրէ քսան Ն. Ֆ. ։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկ. Պարէտ Բամպուքճեան, 20 Ն. Ֆ. կը նուիրեն Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլէի օգափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի Վռամ Քիւրքճեանի մահուան առթիւ ։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

« Մայիս 28 »ը կը տօնուի Փարիզի մէջ, 27 Մայիս Շաբաթ գիշեր, Զ. թաղապետարանի սրահներուն մէջ ։

## ՆՈՒԷՐ

Ալֆորվիլէն Քիրէճեան ընտանիքը երսուն Ն. Ֆ. կը նուիրէ Ալֆորվիլի Աղքատախնամին, փոխան ծաղկեպսակի ողբ. Լեւոն Քանթարճեանի մահուան առթիւ ։

## ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Նիէո – Պուա Քոլոմպի մասնաճիւղին ։ Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24 ։ Մանրամասնութիւնները յետագային ։



## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԶԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

### ՓԱՐԻԶ
### ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԹԻ

**Ս. ՅՈՎՀ. – ՄԿՐՏԻՉ**
Ժամերգութիւն ժամը 8 ։
Պատարագ ժամը 10 ։
Ոտնլուայ ժամը 16 ։
Խաւարում 19·30 ։

**ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ**
Ժամերգութիւն ժամը 10·30 ։
Ոտնլուայ 15 ։
Հանդիսաւոր պատարագ 16·30 ։
Խաւարման ժամերգութիւն 20 ։

**ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ**
Ժամերգութիւն ժամը 8·30 ։
Պատարագ եւ հաղորդութիւն տղոց 10 ։
Ոտնլուայ 17 ։
Խաւարում 19·30 ։

**ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻ**
Պատարագ ժամը 8 ։
Երեկոյեան ժամերգութիւն 15 ։
Ոտնլուայ 16 ։
Գիշերային ժամերգութիւն 18 ։
Առաւօտեան ժամերգութիւն 20·30 ։
Խաւարում 21·30 ։
«Խաչի քո Քրիստոս» 22·30 ։

**ՊՕՄՈՆ**
Ժամերգութիւն ժամը 8·30 ։
Պատարագ 10 ։
Հաղորդութիւն մանկանց եւ Ոտնլուայ 17 ։
Խաւարում 19·30 ։

**ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ (Մարսէյլ)**
Ժամերգութիւն ժամը 9 ։
Ոտնլուայ 17 ։
Խաւարում 20 ։

**ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ**
Ժամերգութիւն ժամը 9 ։
Հաղորդութեան պատարագ 10·30 ։
Ոտնլուայ 16 ։
Խաւարում 19·30 ։

**ՏԷՍԻՆ**
Պատարագ ժամը 10 ։
Ոտնլուայ 16·30 ։
Խաւարում 20·30 ։

### ԱՐՈՒԱՐՁԱՆՆԵՐ

**ՇԱՒԻԼ, ԱՌՆՈՒՎԻԼ եւ ԱԼՖՈՐՎԻԼ**
Փարիզի եկեղեցւոյ ժամերուն ։

**ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՈՅԻ Ս. ՅԱԿՈԲ ԵԿԵՂԵՑԻ**
Սկիզբը ժամերգութեան ժամը 9 ։
Պատարագ 10 ։
Հաղորդութիւն մանկանց, երեկոյ Ոտնըլուայ 17 ։
Խաւարում 20 ։

ԿՐԸՆՈՊԼԸ.— Զատկուան առթիւ Ս. պատարագ կը մատուցուի՝ Երկուշաբթի Ապրիլ երեքին, Րիւ Ժէի սրահին մէջ ։ Ժամերգութիւնը կը սկսի ժամը 9ին ։





## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Մարսէյլի Ազգ. Կեդր. վարչութիւնը կ'ողբայ անդարմանելի կորուստը իր ժրաջան, ազգանուէր եւ բարեացակամ գանձապահ՝ Արամ Թէրզիպաշեանի որ միշտ օգտակար եղած է Ազգ. եւ հասարակական ձեռնարկներու մէջ ։ Այս առթիւ ցաւակցութիւն կը յայտնէ Այրի Տիկին Թէրզիպաշեանի, զաւակներուն և համայն ընտանեկան պարագաներուն ։



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Պ. Մանուկ Քաչանեան, փոխան ծաղկեպսակի քսան Ն. Ֆ. կը նուիրէ Սողոմոն Թէհլիրեան սրահին։Վենսան Զիլինկիրեանի մահուան առթիւ։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Տէր եւ Տիկին Սիսլեան եւ իրենց զաւակը, սրտի խորունկ կսկիծով սգալով իրենց գաղափարական եղբօր եւ կնքահօր՝

ՅԱԿՈԲ ԱԶԻԶԵԱՆԻ

ղառնաղէտ մահը, իրենց ցաւակցութիւնները կը յայտնեն Տէր եւ Տիկին Վ. Ազիզեանի եւ ընկեր Կոպ. Թանտրճեանի։

Այս առթիւ փոխան ծաղկեպսակի կը նուիրեն Փարիզի Մշակոյթի Տան Շ. Միսաքեան եւ Յ. Օնպաշեան սրահներուն 40ական Ն. Ֆ. եւ Յառաջի բարգաւաճման քսան Ն. Ֆ.։

⅄

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Պ. Յակոբ Վարժապետեանի, իր փեսին՝ Բիւզանդ Բաբելեանի ցաւալի մահուան առթիւ, ինչպէս նաեւ հանգուցեալին ընտանիքին եւ պարագաներուն։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տիկին Աղնիւ Գազազեան երեսուն Ն.Ֆ. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին Օր. Ալիս Սամուէլեանի ընդ էմիլ Ասլանեանի նշանախօսութեան առթիւ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Հ. Թէրզիպաշեան, Տէր եւ Տիկին Քրիստափոր եւ Գէորգ Թէրզիպաշեան իրենց զգացուած շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր այն կազմակերպութիւններուն եւ բարեկամներուն, որոնք իրենց ներկայութեամբ, ծաղկեպսակներով եւ նուիրատուութիւններով մասնակցեցան իրենց սուգին,

ԱՐԱՄ ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆԻ

մահուան առթիւ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՎԱԼԱՆՍ.— Տէր եւ Տիկին Երուանդ Գաբրիէլեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս Կիրակի Վալանսի Հայ Առաքելական Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ողբացեալ մօր եւ մեծ մօր

ՄԱՐԻԱՄ ԳԱԲՐԻԷԼԵԱՆԻ

(Ծնեալ Քարողլանեան, Մալաթիա)

մահուան քառասունքին առթիւ։

## ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Անիէռ – Պուա Քոլոմպի մասնաճիւղին։

Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24։

Մանրամասնութիւնները յետագային։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼ

Նախաձեռնութեամբ Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան։

ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ՝ ԱՊՐԻԼ 8

Դաշնակահար

ՌԱՖՖԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ

կուտայ բացառիկ նուագահանդէս մը Սփլանտիտի սրահներուն մէջ։



## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԶԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

### ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹ

### ՓԱՐԻԶ

Ս. ՅՈՎՀ. – ՄԿՐՏԻՉ

Թաղման Թափօր ժամը 17ին։

ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

Ժամերգութիւն եւ երկրպագութիւն Ս. Խաչի ժամը 17։

ԱՐՈՒԱՐՁԱՆՆԵՐ

ՇԱՒԻԼ, ԱՌՆՈՒՎԻԼ եւ ԱԼՖՈՐՎԻԼ

Փարիզի եկեղեցւոյ ժամերուն։

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Առաւօտեան ժամերգութիւն ժամը 8·30։

Թաղում 17։

ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻ

Ս. Կուսին ժամը 7։

Խոցերուն աղօթքը 8։

Ճաշու ժամերգութիւն 10։

«Խաչի Քո Քրիստոսի» 11·30։

Ճանապարհ Խաչի 15։

Երեկոյեան ժամերգութիւն 18։

Քարոզ չարչարանաց 19։

Թաղում Յիսուսի 20։

«Խաչի Քո Քրիստոսի» 21։

ՊՕՄՈՆ

Թաղում ժամը 17·30։

ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ (Մարսէյլ)

Թաղում ժամը 18ին։

ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ

Թաղում ժամը 17·30։

ՏԷՍԻՆ

Թաղում ժամը 19·15։

ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՈՅԻ Ս. ՅԱԿՈԲ ԵԿԵՂԵՑԻ

Թաղում ժամը 17։

ԿՐԸՆՈՊԼԸ.— Զատկուան առթիւ Ս. պատարագ կը մատուցուի՝ Երկուշաբթի Ապրիլ երեքին, Րիւ Ժէի սրահին մէջ։ Ժամերգութիւնը կը սկսի ժամը 9ին։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի Նահանգային Միութեան տարեկան խնջոյքը Ապրիլ 30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ։

Մանրամասնութիւնները յետագային։



Imprimerie Spéciale du journal « Haratch »

32, Rue de Trévise, PARIS (9e)

ՇՐՋԱՆԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ ԻՐ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՎ ՄԵԾ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՄԲ ԿԸ ՏՕՆԷ

# ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

ԿԻՐԱԿԻ ԱՊՐԻԼ 9ԻՆ, ԺԱՄԸ 15ԻՆ

SALLE DE LA CHIMIE

28 bis, Rue Saint-Dominique

Կը նախագահէ ՏԻԿԻՆ Հ. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ

Կը բանախօսէ ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Փարիզի սիրուած եւ գնահատուած լաւագոյն ուժերը։

ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵՐՐԵԱԿԸ

(Հայկական ժողովրդական երգեր)

Պ. Մկրտիչ Պօղոսեան (թենոռ)

Օր. Ա. Գաբոյեան (արտասան.) Պ. Արա Գրիգորեան (արտ.)

Օր. Օփիկ Քոմբաջեան (դաշնակ)

Յայտնի ջութակահար

GERARD JARRY

(Premier Prix du Concours Marguerite Long–Jacques Thibaud 1954)

Դաշնակով կ'ընկերանայ

Mme FRANÇOISE LE GONIDES-MAURON

Պիտի նուագէ Ա. Խաչատուրեանի, Գ. Մ. Ալէմշահի եւ այլ հեղինակներու գործերը։

Մուտք՝ 5 եւ 3 Ն. Ֆ.